Պրոլետարներ բոլոր յերկրների, միացե՛ք

Հ Կ (Բ) Կ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ՅԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 14 (92)

«ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
ՅԵՐԵՎԱՆ—1940

digitised by A.R.A.R.@

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

20-ԱՀ

Հ Կ (Բ) Կ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ՑԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ



## № 14 (92)

«ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
ԵՐԵՎԱՆ—1940

digitised by A.R.A.R.@

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ





ԱԳԻՏԱՏՈՐԻ ԶՐՈՒՅՑԸ

# ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՄԻՈՒԹՅԱՆ ՌԱԶՄԱ-ԾՈՎԱՅԻՆ ՆԱՎԱՏՈՐՄԸ

Հուլիսի 28-ը նշանակալից դատա յե խորհրդային օրացույցի մեջ: Անցյալ տարի կուսակցության և կառավարության վորոշմամբ այդ օրը հայտարարվեց ամենամյա համաժողովրդական տոն, նվիրված ԽՍՀ Միության Ռազմա-Ծովային Նավատորմին:

Ռազմա-Ծովային Նավատորմի օրը Խորհրդային Միության ծովային ուժերի ստուգատեսի օրն է, սոցիալիզմի յերկրի հզոր նավատորմի կառուցման գործում մեր ձեռք բերած նվաճումների ստուգատեսի օրը: Դա վողջ խորհրդային ժողովրդի



12 000
1514-54
digitised by A.R.A.R.@

հետ մեր պանծալի ծովայինների ունեցած անխզելի կապի ցուցադրման որն է, ժողովրդի և նրա սիրելի զավակի՝ Ռազմա-Ծովային Նավատորմի միասնության տոնը․

# ԽՍՀՄ-Ն ԾՈՎԱՅԻՆ ՄԵԾ ՏԵՐՈՒԹՅՈՒՆ Է

Տասնչորս ծով և յերկու օվկիանոս ողողում են Խորհրդային Միության ափերը։ Մեր ծովային սահմանները, ընդգրկելով հսկայական մի ցամաքամաս, ձգվում են տասնյակ հազարավոր կիլոմետրերով։ Այդ սահմանների վրայով անցնում են կարևորագույն առևտրական ճանապարհները, վորոնք մեր յերկիրը կապում են ամբողջ աշխարհի հետ։

Կապիտալիստական շրջապատման մեջ գտնվող մեր անծայրածիր սոցիալիստական հայրենիքի ծովային սահմանների պաշտպանության համար հարկավոր է մեծ և ուժեղ Ռազմա-Ծովային Նավատորմ։

1938 թվի հունվար ամսին հանդես գալով ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի առաջին սեսսիայում, խորհրդային կառավարության ղեկավար ընկ. Մոլոտովը կատարյալ



պարզությամբ հիմնավորեց խորհրդային հզոր Ռազմա-Ծովային Նավատորմ ստեղծելու անհրաժեշտությունը։

«Մենք պետք է հաշվի առնենք այն բանը,—ասաց ընկ. Մոլոտովը,—վոր մեր յերկիրը մեծ է, վոր նա ողողվում է ծովերով վիթխարի տարածության վրա, և դա մեզ միշտ հիշեցնում է այն բանի մասին, վոր մեր նավատորմը պետք է լինի ամուր, ուժեղ։ Այդ նույն բանի մասին են մեզ հիշեցնում նաև կապիտալիստական տերությունները նրանով, վոր վերջին տարիներս ռազմա-ծովային վիթխարի շինարարություն են ծավալել»։

Ծովային սպառազինումների կատաղի զարգացումը կապիտալիստական յերկրներում շարունակվում է էլ ավելի ուժեղանում է այն բանի առնչությամբ, վոր գնալով բորբոքվում է յերկրորդ իմպերիալիստական պատերազմը։

Կապիտալիստական յերկրների ծովային սպառազինումների ծավալի մասին, առ 1-ը հունվարի 1940 թվի, վորոշ պատկերացում կարող է տալ հետևյալ աղյուսակը, վորը կազմված է օտարերկրյա մամուլի տվյալների համաձայն․



digitised by A.R.A.R.@

| Նավերի տեսակները | Անգլիա | | Գերմանիա | | Իտալիա | | Ա Մ Ն | | Ֆրանսիա | | Ճապոնիա | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| | Պատրաստ | Կառուցման մեջ է | Պատրաստ | Կառուցման մեջ է | Պատրաստ | Կառուցման մեջ է | Պատրաստ | Կառուցման մեջ է | Պատրաստ | Կառուցման մեջ է | Պատրաստ | Կառուցման մեջ է |
| Գծանավեր . . . | 14 | 9 | 4 | 3 | 6 | 2 | 15 | 8 | 7 | 4 | 9 | 2 |
| Ավիակիրներ . . | 6 | 6 | — | 2 | — | — | 6 | 1 | 1 | 2 | 6 | 3 |
| Ծանր հածանավեր | 15 | — | 4 | 1 | 7 | 2 | 18 | — | 7 | — | 12 | 3 |
| Թեթև հածանավեր | 49 | 23 | 6 | 4 | 14 | 12 | 19 | 6 | 11 | 3 | 25 | 4 |
| Լիդերներ . . . . | 17 | 3 | — | — | — | — | — | — | 32 | 4 | — | — |
| Եսկադրային ականակիրներ և ականակիրներ . . . . | 170 | 26 | 52 | 20 | 134 | 12 | 228 | 33 | 41 | 25 | 124 | 10 |
| Սուզանավեր . . . | 60 | 11 | 71 | — | 106 | 27 | 96 | 18 | 78 | 25 | 60 | 10 |

Ծանոթ. — գծիկները նշանակում են, վոր տեղեկություններ չկան:

Ներկայումս այս թվերն արդեն փոքր-ինչ հնացել են, քանի վոր, մեկ կողմից, քիչ չեն այնպիսի նավեր, վորոնք պատերազմական գործողությունների ժամանակ վոչնչացվել կամ շարքից հանվել են, մյուս կողմից, թե՛ պատերազմող և թե՛ չպատերազմող յերկրներում տենդոտ տեմպերով կառուցվում են նոր ռազմանավեր:

Յերկրորդ իմպերիալիստական պատերազմի փորձը ցույց է տալիս, թե ներկայի պատերազմում ինչպիսի հսկայական նշանակություն ունի ռազմա-ծովային նավատորմը: Թե՛ մի վորևէ հարձակողական խոշոր խնդիր լուծելու համար (ինչպես այդ արին գերմանացիները Նորվեգիայում), թե՛ ցամաքային զորքերի հեռացմանն աջակցելու համար (ինչպես այդ արեց դաշնակիցների նավատորմը Նորվեգիայում և Ֆլանդրիայի ափերին), նավատորմը մինչև էլ գործակցելով ցամաքային և օդային ուժերի հետ մեծ ազդեցություն է գործում օպերացիաների ընթացքի վրա:

Այս ամենը մի անգամ ևս հաստատում է խորհրդային հզոր նավատորմ ստեղծե-



digitised by A.R.A.R.@

լու մասին խորհրդային կառավարության ընդունած պատմական վորոշման ճշտությունը, մի նավատորմ, վորը կոչված է հերոսական Կարմիր բանակի հետ միասին պաշտպանելու աշխարհիս առաջին և միակ սոցիալիստական պետությունը: Խորհրդային Միությունը ծովային մեծ տերություն է: Նա պետք է ունենա ռազմա-ծովային հզոր նավատորմ, վորը բաղկացած լինի ամեն տեսակ նավերից, մի նավատորմ, վորն ընդունակ լինի պաշտպանել մեր սահմաններն ու ծովային առևտրական ճանապարհները, մի նավատորմ, վորն ընդունակ լինի հետ շպրտել ամեն մի թշնամու խորհրդային սահմաններից և թշնամուն խփել նրա սեփական ջրերում:

«Հզոր Խորհրդային տերությունը,—ասում եր ընկ. Մոլոտովը,—պետք է ունենա իր շահերին համապատասխանող, մեր մեծ գործին արժանի ծովային ու ովկիանոսային նավատորմ»:

Ռազմական մեծ նավատորմի կառուցումը հանդիսացավ խորհրդային պետության պաշտպանությունն ամրապնդելու մասին ընկեր Ստալինի տված իմաստուն ցուցումների հետևողական կենսագործումը:



Ռազմա-Ծովային շինարարության մեծ ծրագիրը, վորը մշակվել է ընկեր Ստալինի անձնական ղեկավարությամբ, հաջողությամբ իրագործվում է: Ընդամենը յերկու և կես տարի յե մեղ բաժանում ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի առաջին պատմական սեսսիայից, բայց այդ կարճ ժամանակամիջոցում արդեն իսկ ինչպիսի հսկայական աշխատանք է կատարված վողջ խորհրդային ժողովրդի կոլեկտիվ կամքը կատարելու—մեծ, հզոր նավատորմ ունենալու ուղղությամբ:

Ամբողջ յերկիրը ձեռնամուխ է յեղել պաշտպանական այս կարևորագույն խնդրի լուծմանը: Մեր պանծալի նավաշինարարները—բանվորները, ինժեներները, տեխնիկները, կոնստրուկտորները, գիտնականները—մեծագույն խանդավառությամբ աշխատում են նավատորմի մարտական աչեղ նավեր, նրա առաջնակարգ հրանոթներ և մեխանիզմներ ստեղծելու ուղղությամբ: Նավաշինարարների հետ միասին այս գործին մասնակցում են արդյունաբերության շատ և շատ ճյուղերի մարդիկ, վորովհետև ժամանակակից խոշոր մարտական նավը, վորն իրենից ներկայացնում է նոր



digitised by A.R.A.R.@

լու մասին խորհրդային կառավարության ընդունած պատմական վորոշման ճշտությունը, մի նավատորմ, վորը կոչված է հերոսական Կարմիր բանակի հետ միասին պաշտպանելու աշխարհիս առաջին և միակ սոցիալիստական պետությունը: Խորհրդային Միությունը ծովային մեծ տերություն է: Նա պետք է ունենա ռազմա-ծովային հզոր նավատորմ, վորը բաղկացած լինի ամեն տեսակ նավերից, մի նավատորմ, վորն ընդունակ լինի պաշտպանել մեր սահմաններն ու ծովային առևտրական ճանապարհները, մի նավատորմ, վորն ընդունակ լինի հետ շպրտել ամեն մի թշնամու խորհրդային սահմաններից և թշնամուն խփել նրա սեփական ջրերում:

«Հզոր Խորհրդային տերությունը,—ասում եր ընկ. Մոլոտովը,—պետք է ունենա իր շահերին համապատասխանող, մեր մեծ գործին արժանի ծովային ու ովկիանոսային նավատորմ»:

Ռազմական մեծ նավատորմի կառուցումը հանդիսացավ խորհրդային պետության պաշտպանունակությունն ամրապնդելու մասին ընկեր Ստալինի տված իմաստուն ցուցումների հետևողական կենսագործումը:



Ռազմա-Ծովային շինարարության մեծ ծրագիրը, վորը մշակվել է ընկեր Ստալինի անձնական ղեկավարությամբ, հաջողությամբ իրագործվում է: Ընդամենը յերկու և կես տարի յե մեզ բաժանում ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի առաջին պատմական սեսսիայից, բայց այդ կարճ ժամանակամիջոցում արդեն իսկ ինչպիսի հսկայական աշխատանք է կատարված վողջ խորհրդային ժողովրդի կոլեկտիվ կամքը կատարելու—մեծ, հզոր նավատորմ ունենալու ուղղությամբ:

Ամբողջ յերկիրը ձեռնամուխ է յեղել պաշտպանական այս կարևորագույն խնդրի լուծմանը: Մեր պանծալի նավաշինարարները—բանվորները, ինժեներները, տեխնիկները, կոնստրուկտորները, գիտնականները—մեծագույն խանդավառությամբ աշխատում են նավատորմի մարտական ահեղ նավեր, նրա առաջնակարգ հրանոթներ և մեխանիզմներ ստեղծելու ուղղությամբ: Նավաշինարարների հետ միասին այս գործին մասնակցում են արդյունաբերության շատ և շատ ճյուղերի մարդիկ, վորովհետև ժամանակակից խոշոր մարտական նավը, վորն իրենից ներկայացնում է նոր



digitised by A.R.A.R.@

տեխնիկայի ամենաբարդ մի ամբողջ կոմբինատ, կառուցվում են ոչ թե մեկ, ոչ թե երկու գործարան, այլ տասնյակ ձեռնարկություններ։

Այդպիսի վիթխարի շինարարության հնարավորություն ստեղծվեց միմիայն ստալինյան հնգամյակների կատարման հետեվանքով, հնգամյակներ, որոնք մեր երկիրը վերածեցին սոցիալիստական հզոր ինդուստրիալ երկրի։

Նավաշինարարական արդյունաբերությունը ցարական Ռուսաստանում թույլ էր զարգացած—նավերի հիմնական մասսան առաջ կառուցում էին ծովային առաջավոր տերությունների նավաշինարաններում։ Համաշխարհային և քաղաքացիական պատերազմների ծանր հետևանքները երկար ժամանակ խորհրդային իշխանությանը խանգարում էին հայրենի նավաշինարարություն կազմակերպելու։ Առաջին հնգամյակում նավատորմն ստիպված էր բավարարվել առանձին բարելավումներով, որոշ մնացած հին նավերի վերականգնումով և մոդեռնիզացիայով։ Ստալինյան առաջին հնգամյակի հաղթական ավարտումը թույլ տվեց անցնելու նոր նավերի, նախապես մեծ մասամբ սուզանավերի շինարարու-



թյանը։ Հզոր ինդուստրիայի զարգացումը երկրորդ հնգամյակում ռազմա-ծովային շինարարության առաջ բաց արավ նոր, լայն հորիզոններ։ Նավատորմն սկսեց ստանալ նոր ականակիրներ, լիդերներ, հածանավեր։ Ստալինյան երրորդ հնգամյակն իսկապես եղ հանդիսացավ խորհրդային մեծ Ռազմա-Ծովային Նավատորմի ստեղծման հնգամյակ։

ԽՍՀՄ-ն ունի չորս նավատորմ—կարմրադրոշ Բալթիկական, Սևծովյան, Հյուսիսային, Խաղաղօվկիանոսյան, ինչպես նաև ֆլոտիլիաներ— Կասպիական, Ամուրյան, Դնեպրյան։ Սուզանավերի և տորպեդային կատերների քանակով ԽՍՀՄ-ն չի զիջում ոչ մի երկրի՝ ամբողջ աշխարհում։ Խորհրդային տորպեդային կատերները լավագույնն են աշխարհում իրենց արագընթացությամբ և սպառազինման ուժով։ Նույնը կարելի յէ ասել նաև խորհրդային սուզանավերի և ականակիրների մասին։ Մեծ նավատորմի առջնեկները՝ «Կիրով» հածանավը, «Մինսկ», «Մոսկվա» լիդերները՝ իրենց սպառազինության ուժով, մեխանիզմների ուժով, չարժընթացի արագությամբ և այլ տակտիկական-տեխ-



digitised by A.R.A.R.@

նիկական հատկություններով հետ չեն մնում տարերկրյա լավագույն նավերից:

Նոր կառուցված և մոդեռնիզացիայի ենթարկված մեր նավերն ունեն առաջնակարգ սպառազինություն: Նրանք ունեն հրետանային և նավիգացիոն սարքերի ու սարքավորումների բոլոր եղական տեսակները: Մեր բոլոր նոր նավերը զինված են այնպիսի սարքերով, որոնք հնարավորություն են տալիս թշնամուն շրջափելով գտնել ջրի տակ, ջրի երեսին և օդում ամեն տեսակի եղանակում և ամեն տեսակի պայմաններում: Մեր նոր կառուցվող նավերի ելեքտրական կարողությունը մի քանի անգամով ավելի յե ներկայումս գործող նավերի կարողությունից: Լավ նախագծում և կառուցում են այդ նավերը մեր հիանալի կոնստրուկտորները — ինժեներներ ընկ. ընկ. Մացկինը, Կուզմիչևը, Բարանովը, Ցիլատովը, Կորչունովը, Միխայլովը և ուրիշները: Մեր ռազմա-ծովային ավիացիան նույնքան ահեղ և ու հզոր, որքան, Կարմիր բանակի ավիացիան:

Հզոր նավատորմ ստեղծել — այդ նշանա-



կում է ո՛չ միայն կառուցել գերազանց մարտական տեխնիկայով հագեցած շատ նավեր: Հզոր նավատորմ ստեղծել — այդ նշանակում է նաև կարճ ժամանակամիջոցում նրա համար պատրաստել հրամանատարների, զինվորական ինժեներների, քաղաշխատողների և մասնագետ մարտիկների առաջնակարգ կադրեր, պատրաստել հազարավոր նոր նավազներ, որոնք կատարելապես տիրապետեն տեխնիկային և ընդունակ լինեն իրենց բարդ զենքն անթասիր կերպով կիրառել ընդդեմ հայրենիքի թշնամիների: Դրա համար էլ, մեծ նավատորմ կառուցելով, ՍՍՀՄ-ի ծովային հզորությունն ամրապնդելով, մեր ժողովուրդը նավատորմ է ուղարկում իր լավագույն, ամենաընդունակ զավակներին, իր հիանալի երիտասարդներին. Լենինյան-ստալինյան կոմսոմոլը, որը 16 տարուց ավելի յե, ինչ վերցրել է նավատորմի շեֆությունը, ամեն տարի նավատորմին նոր համալրում է տալիս լավագույն կոմսոմոլիստներից, նրանց ուղարկելով մարտական նավերը, մասամբ նաև ռազմա-ծովային ուսումնարանները:



digitised by A.R.A.R.@

# ԾՈՎԱՅԻՆՆԵՐԻ ՊԱՆԾԱԼԻ ՏՐԱԴԻՑԻԱՆԵՐԸ

Ծովի սերը, ռազմական արիությունն ու հերոսությունը, ծովային տարածություններում կռվելու և թշնամուն ջախջախելու հիանալի կարողությունը մեր հայրենիքի մարդկանց վաղեմի հատկություններն են: Ռուսական ռազմանավատորմը, որի պանծալի տրադիցիաները շարունակում և մեծարում են խորհրդային ռազմի-ծովայինները, քիչ չի կատարել քաջարի գործեր, հայրենիքը պաշտպանելով ուժեղ թշնամիներից: Պատմության էջերում ոսկի տառերով են գրված ռուսների ծովային հաղթանակները Գանգուտի, Գրենգամի, Չեսմայի, Աֆոնի, Կալիակրիայի, Սինոպի մոտ, Սևաստոպոլի հերոսական պաշտպանությունը:

Իր գոյության 200 տարվա ընթացքում, Գանգուտից սկսած, ռուսական նավատորմը շահել է 20 խոշոր ճակատամարտ: Բնորոշ են այդ մարտերի ընդհանուր թվական տվյալները. ռուսական 588 նավեր այդ մարտերում կռվել են ընդդեմ թշնա-



մու 815 նավերի: Ըստ որում կործանվել է թշնամու 206 նավ, իսկ ռուսական՝ 3 միայն: Գերի են վերցվել թշնամու 75 նավ. թշնամին գրավել է միայն ռուսական մեկ նավ:

Ռուսական անվեհեր նավագնացներ Դեժնևը, Բերինգը, Լապտև եղբայրները, Չելյուսկինը, Մալիգինը, Սեդովը և ուրիշներ գիտության համաշխարհային գանձարանը հարստացրել են իրենց բազմաթիվ հայտնագործություններով և հետախուզություններով:

Մեր օրերում խորհրդային հերոս ծովայինները, Ստալինի հանճարով ոգեշնչված,— Պապանինը, Բադիգինը և նրանց պանծալի ընկերները,— արժանավոր կերպով շարունակելով իրենց նախորդների գործը, մեր հայրենիքը հռչակեցին իրենց Արկտիկայի հետազոտության բնագավառում, բևեռային օվկիանոսի դաժան տարերքի դեմ տարած իրենց հաղթանակներով:

Խորհրդային նավատորմն ունի իր հիանալի հեղափոխական տրադիցիաները:

Հեղափոխական բանվորական շարժումը Ռուսաստանում կենդանի արձագանք է



digitised by A.R.A.R.@

գտել ցարական նավատորմի նավաստիների մեջ: Նավաստու սրտին առանձնապես մոտիկ են յեղել բոլշևիկյան կուսակցության լոզունգները: «Պոտյոմկին» զրահանավի, ապա և «Օչակով» հածանավի նավաստիների հերոսական պայքարը սկիզբ դնելով բանակի և նավատորմի անցմանը հեղափոխության կողմը, հանդիսացավ 1905 թվի հեղափոխական մարտերի նախաբանը:

## ԼԵՆԻՆԻ-ՍՏԱԼԻՆԻ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԴՐՈՇԻ ՏԱԿ

Նավաստիների մեջ բոլշևիկյան կուսակցության տարած բազմամյա աշխատանքը տվեց հիանալի արդյունքներ: Ծովայիններն արդարացրին կուսակցության վստահությունը:

««Ավրորա» հածանավը Ձմեռային պալատի դեմ ուղղած իր թնդանոթների վորոտով հոկտեմբերի 25-ին հայտարարեց նոր երայի—սոցիալիստական մեծ հեղափոխության երայի սկսվելը»[1]:

Վ. Ի. Լենինը միշտ բարձր է գնահատել

1) «ՀամԿ(բ)Կ պատմության համառոտ դասընթաց», էջ 288—289:



ծովայիններին նրանց քաջության և հեղափոխությանն անձնուրացաբար նվիրված լինելու համար: 1917 թվի հոկտեմբերյան հաղթանակից հետո բոլշևիկների կուսակցությունը, Լենինը և Ստալինը նավաստիներին ուղարկում եյին խորհրդային իշխանության շինարարության համար և հակահեղափոխության ու տարբերկրյա ինտերվենտների դեմ մղվող պայքարի ամենապատասխանատու ճակատամասերը:

Վճռական հակահարված տալով գերմանական կայզեր նավատորմին մոոզունդյան ճակատամարտում, բալթիական ծովայինները ինտերվենտների նավատորմի առաջ փակեցին ծովային մատույցները դեպի հեղափոխության որորան Պետրոգրադը: 1918 թվի գարնանը, առասպելական սառցային արշավանքը կատարելով, բալթիկցիները հեղափոխության համար փրկեցին նրա հզոր նավատորմը:

Քաղաքացիական պատերազմում նավաստիական ջոկատները և նոր ստեղծված գետային ռազմական ֆլոտիլիաները կռվեցին սպիտակ գվարդիականների և ինտերվենտների դեմ բոլոր ճակատներում, քաջության և հերոսության հրաշքներ ցու-



151454



digitised by A.R.A.R.@

ցաբերելով: Հերոս նավաստիներ Ժելեզնյակովի, Մարկինի, Խոխրյակովի, Պոլուխինի և հայրենիքի ուրիշ շատ քաջարի զավակների հիշատակը, վորոնք իրենց կյանքը զոհեցին խորհուրդների իշխանության համար մղվող պայքարում, սրբությամբ մեծարում է մեր ժողովուրդը:

Անգլիական ինտերվենտների ուժեղագույն նավատորմի դեմ մղվող մարտերում կարմիր ծովայինները զգալի և շատ հարվածներ հասցրին թշնամուն: Անգլիացիները Պետրոգրադի մատույցներում կորցրին 16 նավ: Անգլիական 10 նավ լուրջ վնասվածքներ ստացան: Վերջ ի վերջո անկոչ հյուրերը հարկադրված յեղան գլուխն առնել հեռանալ:

Մեծ Ստալինի ղեկավարությամբ Ցարիցինի հերոսական պաշտպանության մասնակցելը, քաջարի գործողությունները Կասպից ծովի վրա Ս. Մ. Կիրովի ղեկավարությամբ, Լոյեվի մոտ սպիտակ լեհերի ամրացված դիրքի խիզախ ճեղքումը Դնեպրյան ֆլոտիլիայի կողմից, հաղթանակը Վոլգիցայի մոտ, Օբիտոչնայա ցամաքալեզվի մոտ, Ենզելիի գրավումը— այս և շատ ուրիշ պանծալի գործեր են



կատարել կարմիր ծովայինները քաղաքացիական պատերազմի տարիներին:

Կարմիր Նավատորմի ամբողջ պատմությունն անխզելիորեն կապված է ժողովուրդների առաջնորդ և ուսուցիչ ընկեր Ստալինի անվան հետ: Ընկեր Ստալինը ծովայիններին պատրաստեց պայքարելու պրոլետարիատի դիկտատուրայի համար, իսկ հետո ղեկավարեց նրանց սպիտակ գվարդիականների և ինտերվենտների դեմ մղվող մարտերում: Նրա նախաձեռնությամբ և ղեկավարությամբ վերածնվեց մեր նավատորմը, ստեղծվեցին նոր նավատորմեր Հյուսիսում և Խաղաղ օվկիանոսում: Նրա ցուցումով և անձնական հոգողությամբ է կառուցվում այժմ սոցիալիզմի յերկրի մեծ նավատորմը:

Ընկեր Ստալինի նախաձեռնությամբ ընդունված է կառավարական հատուկ վորոշում, վորի հիման վրա ընթանում է նավերի կոմպլեքսային շինարարությունը յերկրի բազմաթիվ ձեռնարկություններում: Ստալինի ամենամերձավոր զինակիցները—ընկ. Մոլոտովը, ընկ. Վորոշիլովը և ընկ. Ժդանովը, վորը Ռազմա-Ծովային Նավատորմի Ռազմական Գլխավոր

digitised by A.R.A.R.@

Խորհրդի անդամ է հանդիսանում,— ամենօրյա ղեկավարություն են ցուցաբերում նավատորմի շինարարության գործում, թափանցելով տառացիորեն բոլոր մանրամասնությունների մեջ:

## ՄԱՐՏԱԿԱՆ ՊԱՀՆՈՐԴՈՒԹՅԱՆ ԴԻՐՔԵՐՈՒՄ

Երիտասարդ Կարմիր Նավատորմի առաջին մարտական ստուգումը հանդիսացան քաղաքացիական պատերազմից հետո Ամուրյան նավատորմի 1929 թվի ճակատամարտերը Մանջուրիայում ընդդեմ իմպերիալիզմի վարձկանների, վորոնք հարձակում եյին գործել մեր սահմանների վրա: Ամուրյան նավատորմն խայտառ վոչնչացրեց թշնամու նավատորմը: Հերոսական սխրագործությունների համար նավատորմն պարգևատրվեց Կարմիր դրոշի շքանշանով:

Տաս տարի անց, 1939 թվի աշնանը, թշնամիները,— այս անգամ սպիտակ ֆիննական զորականները,— վորոնք հանդգնել եյին խախտել մեր հայրենիքի նվիրական սահմանները և սպառնալ Լենինի քաղա-



քին, իրենց կաշվի վրա զգացին մեր զենքի ուժն ու ամրությունը: Կարմրադրոշ Բալթիկի ռազմիկ ծովայինները Կարմիր բանակի զորամասերի հետ միասին դուրս յեկան կրծքով պաշտպանելու հայրենի յերկիրը: Թշնամու դեմ մղվող մարտերում—ծովում և ցամաքում, դաժան պայմաններում, փոթորիկների և սառնամանիքների մեջ, հուժկու սառցադաշտերով առաջ շարժվելով,—քաջարի բալթիկցիները նոր փառքով պատեցին իրենց դրոշակները: Նրանք ջախջախիչ հարվածներ հասցրին թշնամուն, գործնականում ցույց տալով, վոր խաղաղ շինարարության տարիներին Խորհուրդների յերկիրը ստեղծել է ռազմիկ ծովայինների նոր սքանչելի կադրեր:

Այնպիսի հին նավերի կողքին, ինչպես, օրինակ, եսկադրային ականակիր «Արտյոմ»-ը (նախկինում «Ազարդ»), թշնամու դեմ կռվի յելան տասնյակ նոր մարտական նավեր: Մեծ նավատորմի առջնեկ «Կիրով» հածանավը, գործելով իր հզոր հրետանիով, խորտակեց սպիտակ ֆինների առափնյա ամրությունները: Իր բոլոր օպերացիաները նավատորմը կատարում եր



digitised by A.R.A.R.@

Կարմիր Բանակի զորամասերի և ավիացիայի հետ սերտ գործակցությամբ:

Անմոռանալի սխրագործություններ կատարեցին այդ պայքարում պանծալի սուզանավորդները: Իրենց հերոս հրամանատարներ Տրիպոլսկու, Վերշինինի, Կոնյաևի հրամանատարության ներքո, մեր սուզանավորդները, բոլշևիկյան կոմիսարներ՝ Պոսեկալինի, Վորոդուշինի և այլոց կողմից ոգեշնչվելով, հաղթահարելով սառույցները, բարրաժները[1]) և ականային փակոցները, հերոսաբար եյին կատարում իրենց մարտական խնդիրը և ընկղմում թշնամու նավերը:

Մի անգամ ընկ. Տրիպոլսկու սուզանավը, սառույցների մեջ բաց ջրի յերեսը դուրս գալով, հարձակման յենթարկվեց թշնամու յերկու ինքնաթիռների կողմից: Սկսվեց հազվագյուտ մի մարտ սուզանավի և օդային հակառակորդի միջև: Թընդանոթի դիպուկ կրակով քաջարի սուզանավորդ ընկ. Սեվոդրիվովը, ցած գցեց մի ինքնաթիռը, մյուս ինքնաթիռը փախուստի դիմեց:

1) Բարրաժ—նավերի և առափնյա հրետանու միջոցով պաշտպանվող փակոցների (ցանցային, ականային և այլն) սիստեմն է:



Հրաշալի գործեր կատարեցին ստալինյան հպարտ բազեները—ծովային ավիացիայի օդաչուները: Մեր ծովային ավիացիան անվրեպ կերպով ջախջախում եր թշնամուն թե՛ ծովում և թե՛ ցամաքում, ռմբակոծում եր սպիտակ ֆիննական նավերը, բազաները, շտաբները, ռազմական պահեստները: Խորհրդային Միության հերոս Վ. Ի. Ռակովը, իր եսկադրիլիայով պատռելով–անցնելով զենիթային հրետանու կրակի միջոցով, անսպասելիորեն յերևում եր հակառակորդի թիկունքում: Ճակատամարտերից մեկում նրա ինքնաթիռի մոտորը ծակվեց գնդակից, բայց ընկ. Ռակովը շարունակեց թռիչքը յերկրորդ մոտորով, ճշտիվ կատարելով մարտական առաջադրությունը:

Դահուկավոր բալթիկցիների մի ջոկատ, վորի մեջ մտնում եյին նավերի, մարտկոցների և դպրոցների մարտիկները, ցույց տվեց, վոր կարմիր ծովայինները կարողանում են ցամաքում ևս կռվել այնքան լավ, վորքան ծովում: Հրամանատար Ն. Ս. Լոսյակովի և կոմիսար Ս. Գ. Բոգդանովի գլխավորությամբ դահուկավորները ավերեցին և վերցրին շատ ԴՈՏ-եր: Ֆիննական ծոցի սառույցների վրա՝ Մուրիլլայի, Կոյ-



digitised by A.R.A.R.@

վիստյի, Վիբորգի մոտ մղված մարտերում—միշտ և ամենուրեք դահուկավոր բալթիկցիները գտնվում էին հարձակվողների առաջին շարքերում: 80 կիլոմետրանոց յերթեր կատարելով, նրանք մտնում էին սպիտակ ֆինների խոր թիկունքը և հարձակվելով թշնամու թևերի վրա, մահացու հարվածներ էին հասցնում նրան: Ամբողջ Բալթիկան ճանաչում է կարմիր նավատորմիկ, Խորհրդային Միության Հերոս Ալեքսանդր Պոսկոնկինին: Մի անգամ, յերբ մի խումբ սպիտակ ֆիններ փորձում էին գերի վերցնել ջոկի վիրավորված հրամանատարին, կարմիր նավատորմիկ Պոսկոնկինը նետվեց թշնամու դիմաց, հրացանի կոթով և սվինով վոչնչացրեց յոթը սպիտակ բանդիտների և կռվից դուրս տարավ վիրավորված հրամանատարին:

Կարմրադրոշ Բալթիկայի և Հյուսիսային Նավատորմի ծովայինները, պաշտպանելով հայրենի հողը, կռվի էին գնում սիրելի Ստալինի անունը շրթունքներին: Յեվ վո՛չ մի բան, վո՛չ մի ուժ չէր կարող կասեցնել նրանց խոյանքը: Թշնամիները ջախջախվեցին, ջարդվեցին: Իմպերիա-



լիստների ցուցմունքով սարքված ավանտյուրան տապալվեց: Խորհրդային ժողովուրդը պարծենում է իր զավակներով: Կառավարությունը գնահատեց նրանց հերոսական գործերը: 22 ծովայիններ արժանացան Խորհրդային Միության Հերոսի կոչման, 2318 ծովայիններ պարգևատրվեցին շքանշաններով և մեդալներով: Դրանից բացի, «Կարմիր դրոշ» շքանշանով պարգևատրվեցին յերեք սուզանավի և յերեք ոդային եսկադրիլյայի եկիպաժները:

Կարմրադրոշ «ՍԿ—311» սուզանավի պանծալի եկիպաժն ժողովուրդների առաջնորդ ընկեր Ստալինին ուղղած իր նամակում գրում էր.

«Կատարելով մեր հրամանատարության կամքը, մենք գնում էինք բարրաժների, ականապատված դաշտերի միջով, մտնելով խութակղզիները: Խորհրդային ժողովուրդը, վորին գլխավորում եք դուք, մեր թանկագին Իոսիֆ Վիսսարիոնովիչ, մեր սուզանավերը զինել է նոր, հիանալի տեխնիկայով, վորը կառուցվել է մեր հայրենի գործարաններում, մեր նյութերից, մեր խորհրդային մարդկանց ձեռքով: Սրանց ձեռքերս ծալելու մենք տալիս ենք մեր



digitised by A.R.A.R.@

բոլոր ուժերը, վորպեսզի կատարելապես տիրապետենք սուզանավային հրանոթի բարդ գիտությանը»։

Բալթիական սուզանավորդների այս ջերմ խոսքերի մեջ արտահայտվում է մեր բոլոր ծովայինների— մեծ հայրենիքի բոցավառ հայրենասերների միտքը։ Սոցիալիզմի յերկրի ռազմիկ ծովայինները, տիրապետելով ռազմա-ծովային բարդ տեխնիկային, կատարում են ընկեր Ստալինի նակազը,—«Ամեն կերպ ամրապնդել մեր Կարմիր բանակի և Ռազմա-Ծովային Կարմիր Նավատորմի մարտական կարողությունը»։

Վերջին տարում, շնորհիվ Խորհրդային Միության արտաքին քաղաքականության հաջողությունների, մեր Կարմրադրոշ Բալթիական Նավատորմը նոր բազաներ ստացավ Ֆիննական ծոցի մատույցներում, վորով ծովի կողմից ապահովվեց Լենինի պանծալի քաղաքի հուսալի պաշտպանությունը։

Միջազգային բարդ իրադրությունը, ավելի ու ավելի բորբոքվող յերկրորդ իմպերիալիստական պատերազմի և սոցիալիզմի յերկրի դեմ թշնամիների նոր հարձակումների աճող վտանգի իրադրությունը, մեզ



դրդում է լիակատար սպառազինությամբ կանգնել մարտական պահնորդության դիրքերում։

Նավատորմի կուսակցական և վոչ կուսակցական բոլշևիկներն անդուլ կերպով պայքարում են տեխնիկայի տիրապետման համար, զինվորական կանոնադրությունների և հրամանատարների հրամանների անշեղ ու բացարձակ կատարման համար, յերկաթյա կարգապահության համար։

Նավատորմի բարձրագույն պետերի համար նոր կոչումներ—ծովակալների կոչումներ մտցնելը ցայտուն կերպով բնութագրում է կուսակցության և կառավարության ստալինյան հոգատարությունը դեպի մեր հրամանատարական կադրերը։ Այդ բարձր կոչումը հատկացված է հրամանատար ծովայինների լավագույններից լավագույններին, առաջավոր ռազմական մտքի և փորձի կրողներին, մարտերում փառաբանված, Լենինի-Ստալինի գործին անձնուրացաբար նվիրված ժողովրդական նավատորմավարներին։

Իլիչյան հրամանատարները, ստալինյան դպրոցի զորավարները, մեր ծովակալները, հենց վոր հայրենիքը պահանջի, մարտի



digitised by A.R.A.R.@

կտանեն մարտական եսկադրաները, վորպեսզի փշրեն ամեն մի թշնամու, փառքով պաշտպանեն սոցիալիստական հայրենիքը:



Խորհրդային Ռազմա-Ծովային Նավատորմի հիանալի առանձնահատկությունն է հանդիսանում նրա անխզելի կապը ժողովրդի հետ: Խորհրդային ժողովուրդը ջերմորեն սիրում է իր զավակ նավատորմը, սիրում է իր վորդիներին՝ պանծալի ծովայիններին: Այդ սերը դրսեվորվում է ամեն օր: Ֆիննական սպիտակ գվարդիականության դեմ մղվող մարտերի օրերին Բալթիկական ծովայինները հազարավոր վողջագուրական նամակներ ու հեռագրեր եյին ստանում մեր անծայրածիր յերկրի բոլոր ծայրերից, բանվորներից, կոլխոզնիկներից, ինտելիգենտներից, պիոներներից և դպրոցականներից: Լենինի քաղաքի գիտնականները գրում եյին իրենց յենթաշեֆ նավատորմին.

«Կարմիր Բանակի պողպատյա պարսպի հետևում, մարտական նավերի հզոր զրա-



հի հետևում, թևավոր պահակների աչալուրջ պաշտպանության ներքո մենք հանգիստ ու վստահ կատարում ենք մեզ հանձնարարված գործը...Ջերմ վողջույն ձեզ, կարմիր հերոսներ»:

ԽՍՀՄ Ռազմա-Ծովային Նավատորմի որը ԽՍՀՄ-ի աշխատավորները, ինչպես անցյալ տարի, կդիմավորեն պաշտպանական աշխատանքի հետագա ուժեղացմամբ, Խորհրդային Միության ծովային և օվկիանոսային հզոր նավատորմի շինարարությանը մասնակցելու նոր դրսեվորումներով:

Հուլիսի 28-ին մեր նավատորմի մարդիկ ամբողջ խորհրդային ժողովրդի առաջ կցուցադրեն հաջողությունները ռազմածովային արվեստի տիրապետման գործում: Ժողովրդի և նրա նավատորմի միասնության համաժողովրդական տոնն այնպես անցկացնենք, վոր նորանոր միլիոն աշխատավորներ ակտիվ կերպով լծվեն մեր հայրենիքի հզոր նավատորմի շինարարության գործին:



digitised by A.R.A.R.@

# ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՑՈՒՑԱԿ

## ՌԱԶՄԱ-ԾՈՎԱՅԻՆ ՆԱՎԱՏՈՐՄԻ ՈՐՎԱ ԱՌԹԻՎ ԶԵԿՈՒՑՈՂՆԵՐԻ ՅԵՎ ԶՐՈՒՅՑ ԱՆՑԿԱՑՆՈՂՆԵՐԻ ՀԱՄԱՐ

### ԼԵՆԻՆ–ՍՏԱԼԻՆԻ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՅԵՎ ՌԱԶՄԱ—ԾՈՎԱՅԻՆ ՆԱՎԱՏՈՐՄԻ ԿԱԶՄԱԿԵՐՊԻՉՆ Ե ՈՒ ԱՌԱՋՆՈՐԴԸ

Վ. Ի. Լենին.— *Սոցիալիստական հայրենիքի պաշտպանության համար: Ժողովածու: Քաղհրատ.* 1939 *թ.: (Ռուս.):*

Վ. Ի. Լենին.— *Ուղիղ հեռագրաթելով խոսակցություն Հելսինգֆորսի հետ* 1917 *թվի նոյեմբերի* 9*-ին (հոկտեմբերի* 27*-ին): Հ. XXII, եջ՝* 27—29: *(Ռուս.):*

Ի. Ստալին.— *Կարմիր բանակի յերեք առանձնահատկությունների մասին: Քաղհրատ.* 1940 *թ.:*

Կ. Յե. Վորոշիլով.— *Կարմիր բանակը սոցիալիստական հայրենիքի պաշտպանության դիրքերում* (1938 *թվի ճառեր, հրամաններ և վողջույններ): Ռազմհրատ,* 1939 *թ. (Ռուս.):*



Կ. Յե. Վորոշիլով.— *Ստալինը և Կարմիր բանակի շինարարությունը: Քաղհրատ,* 1940 (*կամ «Պրավդա»,* 21 *դեկտեմբերի,* 1939 *թվի*):

## ՄԵՐ ՆԱՎԱՏՈՐՄԻ ՀԵՐՈՍԱԿԱՆ ԱՆՑՅԱԼԸ

Վ. Ի. Լենին.— *Զեկուցում* 1905 *թվի հեղափոխության մասին: Հ. XIX, եջ՝* 349—351:

Վ. Ի. Լենին.— *Ռուսական ցարն իր ժողովրդի հանդեպ պաշտպանություն և փնտրում թյուրքական սուլթանի մոտ: Հ. VII, եջ՝* 388—391:

ՀամԿ(բ)Կ պատմություն: Համառոտ դասընթաց, *եջ՝* 84, 85, 112, 288, 289: (Հայ. հրատ):

Կ. Ֆելդման.— *«Պոտյոմկին» զրահանավը (մասնակցողի հիշողություններ): Կարմիր բանակայինի գրադարան: Ռազմհրատ,* 1938 *թ.: (Ռուս.):*

Բ. Զվոնարև.— *Լեյտենանտ Շմիդտ: Կարմիր բանակայինի գրադարան: Ռազմհրատ.* 1939 *թ.: (Ռուս.):*

Ռազմիկ ծովայինները քաղաքացիական պատերազմի ֆրոնտներում: *Կարմիր նա—*

digitised by A.R.A.R.@

*վատորմային գրադարան: Ռազմա-ծովային հրատ.* 1939 *թ.: (Ռուս):*

Պ. Զվոնկով.— *Բալթիական նավատորմը Պետրոգրադի պաշտպանն է: Լենհրատ.* 1939 *թ.: (Ռուս):*

Ս. Բդրիսով.— *Քաղաքացիական պատերազմը հյուսիսում: Կարմիր բանակային գրադարան: Ռազմհրատ.* 1939 *թ.: (Ռուս):*

Նավատորմը հայրենիքի համար մղվող մարտերում: *Հոդվածների ժողովածու: Ռազմա-Ծովային հրատ.* 1938 *թ.: (Ռուս):*

## ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ ԿԱՌՈՒՑՈՒՄ Է ՄԵԾ, ՀԶՈՐ ՆԱՎԱՏՈՐՄ

Վ. Մ. Մոլոտով.— *Ճառ ԽՍՀ Միության Գերագույն Խորհրդի առաջին սեսիայում:*

Ի. Թևոսյան.— *Ճառ ՀամԿ(բ)Կ XVIII համագումարում: Սղագրական հաշվետվություն, էջ* 419—423, 1939 *թ.:*

*ԽՍՀ Միության Ռազմա-Ծովային Նավատորմի օրվանը՝ արժանի դիմավորություն: Զրույց ԽՍՀՄ նավաշինարարական արդյունաբերության ժողկոմ ընկ.* Թևոսյանի *հետ: «Պրավդա»,* 8 *հուլիսի* 1939 *թվի:*



Զ. Լոխտին.— *Ռազմա-Ծովային Նավատորմը: 4-րդ հրատ: Ռազմհրատ.* 1939 *թ.: (Ռուս.):*

## ԻՄՊԵՐԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՏԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՊԱՏԵՐԱԶՄԸ ԾՈՎԻ ՎՐԱ

Վ. Բելլի.— *Ծովում մղվող պատերազմի մի քանի օպերատիվ—ստրատեգիական արդյունքներ:* «Красный Флот» *թերթ,* 20 *ապրիլի* 1940 *թվի:*

Վ. Սուվորով.— *Ծովային ավիացիան մարտում: «Իզվեստիա»,* 10 *մայիսի* 1940 *թվի:*

Դ. Ժմակին.— *Սուզանավերի գործողությունների առանձնահատկությունները ժամանակակից պատերազմում:* «Красный Флот», 20 *մայիսի,* 1940 *թվի:*

Ի. Ցերմաշև.— *Բրիտանական ծովային պլանի խորտակումը:* «Красный Флот», 21 *մայիսի* 1940 *թվի:*

Լ. Իվանով.— *Ամերիկայի Միացյալ Նահանգների ծովային քաղաքականությունը:* «Мировое хозяйство и мировая политика» *ժուռնալ,* № 2, 1940 *թ.:*



digitised by A.R.A.R.@

վատորմային գրադարան: Ռազմա-ծովային հրատ. 1939 թ.: (Ռուս):

Պ. Զվոնկով.— Բալթիական նավատորմը Պետրոգրադի պաշտպանն է: Լենհրատ. 1939 թ.: (Ռուս):

Ս. Բղբիսով.—Քաղաքացիական պատերազմը հյուսիսում: Կարմիր բանակային գրադարան: Ռազմհրատ. 1939 թ.: (Ռուս):

Նավատորմը հայրենիքի համար մղվող մարտերում: Հոդվածների ժողովածու: Ռազմա-Ծովային հրատ. 1938 թ.: (Ռուս):

## ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ ԿԱՌՈՒՑՈՒՄ Է ՄԵԾ, ՀԶՈՐ ՆԱՎԱՏՈՐՄ

Վ. Մ. Մոլոտով.— Ճառ ԽՍՀ Միության Գերագույն Խորհրդի առաջին սեսիայում:

Ի. Թևոսյան.— Ճառ ՀամԿ(բ)Կ XVIII համագումարում: Սղագրական հաշվետվություն, էջ 419—423, 1939 թ.:

ԽՍՀ Միության Ռազմա-Ծովային Նավատորմի օրվանը՝ արժանի դիմավորություն: Զրույց ԽՍՀՄ Նավաշինարարական արդյունաբերության ժողկոմ ընկ. Թևոսյանի հետ: «Պրավդա», 8 հուլիսի 1939 թվի:



Զ. Լոխտին.— Ռազմա-Ծովային Նավատորմը: 4-րդ հրատ: Ռազմհրատ. 1939 թ.: (Ռուս.):

## ԻՄՊԵՐԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՏԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՊԱՏԵՐԱԶՄԸ ԾՈՎԻ ՎՐԱ

Վ. Բելլի.— Ծովում մղվող պատերազմի մի քանի օպերատիվ—ստրատեգիական արդյունքներ: «Красный Флот» թերթ, 20 ապրիլի 1940 թվի:

Վ. Սուվորով.— Ծովային ավիացիան մարտում: «Իզվեստիա», 10 մայիսի 1940 թվի:

Դ. Ժմակին.— Սուզանավերի գործողությունների առանձնահատկությունները ժամանակակից պատերազմում: «Красный Флот», 20 մայիսի, 1940 թվի:

Ի. Ցերմաշև.— Բրիտանական ծովային պլանի խորտակումը: «Красный Флот», 21 մայիսի 1940 թվի:

Լ. Իվանով.— Ամերիկայի Միացյալ Նահանգների ծովային քաղաքականությունը: «Мировое хозяйство и мировая политика» ժուռնալ, № 2, 1940 թ.:



digitised by A.R.A.R.@

## ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՅԵՐԿՐԻ ԾՈՎԱՑԻՆ ՍԱՀՄԱՆՆԵՐԻ ՊԱՀՊԱՆՈՒԹՅԱՆ ԴԻՐՔԵՐՈՒՄ

*ԽՍՀ Միության Ռազմա-Ծովային Նավատորմի ժողովրդական կոմիսար, նավատորմի 2-րդ կարգի ֆլագման ընկ. Կուզնեցովի 1939 թվի հուլիսի 24-ի զեկուցումը Գորկու անվան Հանգստի և կուլտուրայի Կենտրոնական պարկի կանաչ թատրոնում Ռազմա-Ծովային Նավատորմի օրվա մասին:* «*Պրավդա*», 25 *հուլիսի* 1939 *թվի:*

Գ. Գրոմով.— *Կոմսոմոլը՝ նավատորմի շեֆ:* «*Կոմսոմոլսկայա Պրավդա*», 24 *հուլիսի* 1939 *թվի:*

*Փառք Կարմիր Նավատորմին:* «*Իզվեստիա*», 8 *փետրվարի* 1940 *թվի* (*առաջնորդող հոդված*):

Ս. Իգնատյեվ.— *Բալթիկայի հերոսները:* «*Իզվեստիա*», 8 *փետրվարի* 1940 *թվի:*

Լեբեդեվ— Կումաչ.— *Բալթիկցիները մարտերում* (*վոտանավորներ և երգեր*): «*Կարմիր Բալթիական նավատորմ*», *հրատ.* 1940 *թ.:*



## ՌԱԶՄԱԿԱՆ ՀԱՍԿԱՑՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԲԱՑԱՏՐՈՒԹՅՈՒՆԸ

### Գ ծ ա ն ա վ

*Գծանավը ռազմա-ծովային նավատորմի ամենախոշոր նավն է: Ժամանակակից գծանավի ջրածավալը հասնում է* 35 *հազար տոննայի, սակայն մի քանի նավատորմերի կազմում* (*Անգլիա, ԱՄՆ, Ճապոնիա*) *կան այնպիսի գծանավեր, վորոնց տոննաժը հասնում է* 45 *հազար տոննայի: Գծանավը պատված է ծանր զրահով և ունի ականային ուժեղ պաշտպանություն: Նրա սպառազինությունը կազմում է խոշոր կալիբրի հրետանին* (*գլխավոր կալիբրը* 406 *միլիմետր է կամ* 16 *դյույմ*)*: Արկի քաշը մոտ* 1 *տոննա յե: Գլխավոր կալիբրի հրանոթների թիվը հասնում է* 9—12*-ի: Այս հրանոթներից գծանավն ընդունակ է կրակ բաց անել մինչև* 40 *կիլոմետր դիստանցիայով: Միևնույն ժամանակ գծանավի վրա կան ավելի փոքր, ոժանդակ կալիբրի* (127—152 *միլիմետր*) *հրանոթներ, վորոնք անհրաժեշտ են հակառակորդի թեթև ուժերի, նրա ականակիրների, սուզանավերի,*



digitised by A.R.A.R.@

տորպեդային կատերների դեմ պայքարելու համար: Հրաձգությունն ուղղելու համար գծանավն ունի 2—4 ինքնաթիռ: Այդ ինքնաթիռները գտնվում են նավի վրա: Վորպեսզի նրանք կարողանան օդ բարձրանալ, կիրառվում են հատուկ հարմարանքներ—կատապուլտներ: Գծանավի վրա հաստատված է 2-ից մինչև 8 զենիթային հրանոթ: Զենիթային հրետանին կարող է կրակ բաց անել 8—10 կիլոմետր բարձրության վրա: Գծանավն ունի 2-ից մինչև 9 տորպեդային ապարատ:

Գծանավի գործողության շառավիղը շատ մեծ է (15 հազար կիլոմետր): Նրա զորախումբը բաղկացած է 1400 և ավելի մարդուց: Գծանավի ընթացքի արագությունը մոտ 50 կիլոմետր է մեկ ժամում: Գծանավի նպատակն է՝ մասնակցելով մարտին նավատորմի մյուս ուժերի հետ միասին, հակառակորդին հասցնել հրետանային հզոր հարվածներ և ավելացնել իր թեթև ուժերի մարտական կայունությունը: Այդպիսի նավի շինարարությունը պահանջում է միջոցների վիթխարի ծախսում: Կառուցման պրոցեսը շատ յերկարատև է—2—3 տարի: Ծովային ուժերի կազմում գծանավերը



ներկայացված են փոքր թվով: Անգլիան և Ամերիկան ամենից ավելի հարուստ են գծանավերով, բայց այդտեղ էլ նրանց թիվը չի անցնում 12—15 միավորից:

## Հածանավ

Հածանավը գծանավից ավելի փոքր է: Նրա զրահը պակաս հզոր է և նա ավելի քիչ է զինված, քան գծանավը: Բայց միևնույն ժամանակ նա ունի ավելի մեծ արագություն—մոտ 70 կիլոմետր մեկ ժամում: Նրա սպառազինությունը կազմում են՝ գլխավոր կալիբրի 9—12 հրանոթ 152—203 միլիմետրանոց և 8 զենիթային հրանոթ 102—127 միլիմետրանոց: Հածանավերն ունենում են 6—12 տորպեդային ապարատ: Նավի զորախումբը բաղկացած է մոտ 700 մարդուց: Հածանավերը լինում են թեթև, վորոնք զինված են 152 միլիմետրանոց հրանոթներով, և ծանր, վորոնք ունեն 203 միլիմետրանոց հրանոթներ: Հածանավի նպատակն է՝ նավատորմի մեծ միավորումների կազմում գործողությունների ժամանակ հետախուզություն և պահպանություն կատարել: Թեթև և ծանր հածանավերի թիվը այնպիսի խոշոր նավատորմերի կազմում, ինչպիսին ունեն Անգ-



digitised by A.R.A.R.@

լիան, Ամերիկան և Ճապոնիան, հասնում է մինչև 30—50-ի։

## Եսկադրային ականակիր

*Եսկադրային ականակիրը թեթև նավ է, վորը մոտավորապես յերեք անգամ փոքր է հածանավից։ Կա յերկու կարգի եսկադրային ականակիր—թեթև եսկադրային ականակիր, վորի ջրածավալը չի անցնում 500 տոննայից, և այսպես կոչված լիդեր, 2—3 հազար տոննա ջրածավալով։ Եսկադրային ականակրի գլխավոր սպառազինությունը կազմում են տորպեդային ապարատները․ եսկադրային ականակիրը կարող է միաժամանակ 12 տորպեդի համազարկ տալ։ Հրետանային սպառազինությունը կազմում են 102—138 միլիմետրանոց կալիբրի 4—8 հրանոթ, 37—75 միլիմետրանոց կալիբրի 2—3 զենիթային հրանոթ և զենիթային գնդացիրներ։ Եսկադրային ականակիրների նպատակն է՝ հետախուզություն կատարել և գրոհել հակառակորդի խոշոր նավերի վրա։ Գրոհը կատարվում է գլխավորապես գիշերը, մառախուղի մեջ կամ ծխի ծածկույթի տակ։ Եսկադրային ականակիրը կարող է ոգտագործվել ականապատման համար։ Այդ նպատակի համար նա ունենում է ականա-*



*յին սպառազինություն։ Եսկադրային ականակիրը զրահ չունի։ Եսկադրային ականակրի ընթացքի արագությունն է մեկ ժամում 80 կիլոմետր։ Զորախումբը բաղկացած է 200 հոգուց։ Եսկադրային ականակիրներն ոգտագործվում են նաև ծխաքող առաջացնելու համար։ Լիդերներն ոգտագործվում են վորպես եսկադրային ականակիրների առաջատար նավեր։ Եսկադրային ականակիրները նավատորմում ամենամեծ թիվն են կազմում։ Մեծ նավատորմերի կազմում նրանք հարյուրներով են հաշվվում (որինակ՝ ամերիկական նավատորմում նրանք հասնում են մոտ 200-ի)։*

## Տորպեդային կատեր

*Սա ամենափոքր և ամենաարագընթաց մարտական նավն է։ Զինված է յերկու տորպեդային ապարատներով և մեկ 75 միլիմետրանոց հրանոթով։ Ավիացիոն տիպի հզոր մոտորի շնորհիվ ընթացքի արագությունը մոտ 100 կիլոմետր է մեկ ժամում։ Զորախումբը բաղկացած է 5—8 հոգուց։ Տորպեդային կատերի նպատակն է՝ անմիջաբար գրոհել հակառակորդի նավերի վրա։ Կիրառվում են տորպեդային կատերները*



digitised by A.R.A.R.@

խմբերով, 3—8-ական միավորներով: Վերջին ժամանակներս կիրառվում են նաև այնպիսի տորպեդային կատերներ, վորոնք ղեկավարվում են ինքնաթիռից՝ ռադիոյի միջոցով. այդպիսի կատերի վրա մարդիկ չկան:

Արդյունաբերության ներկայի վիճակը թույլ է տալիս տորպեդային կատերներ կառուցել արագորեն և մեծ քանակությամբ:

## ԱԿԱՆ

Ծովերի վրա նավերի ճանապարհը կարելի յե փակել հատուկ փակոցներով: Փակելու հիմնական միջոցն են հանդիսանում զանազան ականները: Ծովում և գետերում ականները դնում են խարիսխներով, վորոնց վրա ականն ամրացվում է բարակ մետաղյա տրոսով: Խարիսխն ընկնում է հատակը, իսկ տրոսը (նավաստիներն այն կոչում են «մենրեպ») անում են այնպիսի յերկարություն, վոր ականը ջրի մակերեսից 1—8 մետր խորության վրա գտնվի:

Ականի մոտ կես մասը (նա գնդաձև է) լցված է պայթուցիկ նյութով: Ականը չի սուզվում, քանի վոր նրա մյուս կեսը լց-



ված է ոդով: Ականների մեծ մասը պայթում է շարժվող նավի ստորջրյա մասի հարվածից: Ականի պայթյունը ճեղք է առաջացնում նավի հատակի վրա, և ջուրը սկսում է այդ անցքից ներս լցվել: Իսկ յեթե ականը պայթի նավի այն մասի մոտ, ուր պահվում են զինամթերքները, կարող է նրանց պայթյուն տեղի ունենալ: Այն ժամանակ նավը կխորտակվի կամ յերկար ժամանակով շարքից դուրս կգա:

Սուզանավերի ճանապարհը փակելու համար կիրառվում են այսպես կոչված անտեննային ականներ, ըստ վորում անտեննա յե հանդիսանում տրոսը: Այդպիսի ականի պայթյունի համար բավական է միայն, վոր սուզանավի կորպուսը կպչի անտեննային:

Ափերի պաշտպանության համար կիրառվում են ստանցիոն ականներ: Ականների ամբողջ ցանցը միացվում է ելեքտրալարերով, վորոնք գնում են ափին գտնվող կայանը: Այդպիսի ցանցը կարելի յե միաժամանակ ամբողջապես պայթեցնել կայանից բաց թողնվող ելեկտրական հոսանքով:

Կան, բացի այդ, մագնիսային ականներ: Հատուկ մագնիսային հարմարանքի շնորհիվ այդ ականները, յերբ մոտենում է



digitised by A.R.A.R.@

նավը, որը իրենից ներկայացնում է մետաղյա մի զանգված, ձգվում են դեպի նա: Նավի հատակին հանդիպելիս ականի հարվածող մեխանիզմը պայթյուն է առաջացնում:

Ականապատ դաշտերի ստեղծումը լայնորեն գործադրվում էր առաջին իմպերիալիստական պատերազմի ժամանակ, Անգլիայի և Նորվեգիայի միջև դրված էր «հյուսիսային մեծ փակոցը», որը բաղկացած էր 70 հազար ականից:

Այժմ էլ դա գործադրում են անգլիացիները և գերմանացիները, որոնք միմյանց ճանապարհ փակում են ոչ միայն եվրոպական ջրերում, այլ անգամ Աֆրիկայի ջրերում:

## Տորպեդ

Վաղորոք դրված ծովային ամեն տեսակի ականի թերությունը նրանում է կայանում, որ, նկատելով ականը կամ պարզելով նրա ներկայությունը, նավը կարող է խուսափել հարվածից:

Այս պատճառը ծնունդ է տվել տորպեդին–ինքնաշարժ ականին: Տորպեդը շատ բարդ մի արկ է, որը «կրակվում է» տորպեդային հատուկ ապարատից անմիջաբար



նպատակի վրա (գլխավորապես ջրի յերեսին լողացող նավերի վրա): Տորպեդը սիգարաձև է. նրա յերկարությունը 8,5 մետր է, տրամագիծը՝ մոտ 55 սանտիմետր:

Քթակողմում լիցքային բաժինը, որը տեղավորում է մոտ 250—300 կիլոգրամ պայթուցիկ նյութ, վերջանում է «ճակատային հարվածիչով»: Տորպեդը պայթում է նավի կողին հարվածելու մոմենտին:

Մեքենայական բաժնում, որը զետեղված է լիցքային բաժնի հետևում, դրվում է խտացած օդով աշխատող մխոցային մեքենան. Հետևի բաժնում զետեղված են այն մեխանիզմները, որոնք կանոնավորում են այն ուղղությունն ու խորությունը, որոնցով պետք է շարժվի ականը. պոչային մասում գտնվում են թիավարման պտուտակներն ու ղեկերը: Այսպիսով, մեքենան թիավարման պտուտակներին հարկադրում է աշխատել, և տորպեդը շարժվում է ջրի տակ ժամում մոտ 50 կիլոմետր արագությամբ: Տորպեդի մեջ գտնվող խտացած օդի պաշարը թույլ է տալիս այդ արագությամբ անցնել մոտ 20 կիլոմետր. այդ նույն պաշարը թույլ է տալիս տորպեդի արագությունը հասցնել ժամում 80 կիլոմետրի, բայց տարածու-



digitised by A.R.A.R.@

թյան վրա՝ 6—7 կիլոմետրից վոչ ավելի:

Նավին հարվածելու համար կարելի յե տորպեդը բաց թողնել հարկ յեղած դիստանցիայի վրա անհրաժեշտ արագությամբ և ստիպել նրան ընթանալ չահավետ խորությամբ, նավի նստվածքի խորությանը համապատասխան:

Այս արկը, սակայն, ունի մի մեծ թերություն: Շարժման ժամանակ տորպեդն իր հետևից հետք է թողնում, քանի վոր խտացած օդը, վորով աշխատում է մեքենան, ջրի յերեսն է բարձրանում մեծ քանակությամբ պղպջակներով, վորոնք ալիքների բացակայության դեպքում շատ լավ յերևում են: Նկատելով այդ հետքը, նավը կարող է ուժեղ շրջադարձ կատարելով խուսափել տորպեդից: Ճիշտ է, այժմ աշխատում են տորպեդի համար ելեքտրական մեքենա ստեղծելու ուղղությամբ:

Յեթե տորպեդը նպատակին չի կպչում, ապա նա կարող է, խտացած օդի պաշարը ծախսելով, ինքնիրեն պայթել կամ վերածվել լողացող ականի: Թե՛ մեկը և թե՛ մյուսը կախված է համապատասխան մեխանիզմի առկայությունից: Հաջողությամբ նպատակին հասնելու դեպքում նավը խորտակվում է:



# ՖԻԶԿՈՒԼՏՈՒՐՆԻԿԻ ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՈՐԸ

## ՈՒԺԻ, ԱՌՈՂՋՈՒԹՅԱՆ ՅԵՎ ԱՐԻՈՒԹՅԱՆ ՏՈՆԸ

Հուլիսի քսանմեկը ֆիզկուլտուրնիկի որն է, Խորհրդային յերկրի աշխատավորության համաժողովրդական տոնը։

Ֆիզկուլտուրան մեզանում համաժողովրդական շարժման թափ է ընդունել, դարձել է խորհրդային միլիոնավոր քաղաքացիների սիրելի, հարազատ գործը։

Բուրժուական յերկրներում կապիտալիստական տնտեսության ամբողջ սիստեմը բանվորին դատապարտում է մեքենայի կցորդի վիճակի։ Տիրոջ համար կատարվող տռրկական աշխատանքը մարդուն հոգե-



digitised by A.R.A.R.@

պես թափուր, ֆիզիքապես խեղանդամ է դառնում։ Այնտեղ սպորտը յեկամտի և վաստակի առարկա չէ դարձել գործարարձեռնարկատերերի համար, վորոնք շահագործում են պրոֆեսիոնալ սպորտսմեններին։ Սպորտային ակումբներն արտասահմանում լցված են բուրժուական յերիտասարդությամբ։ Յերբ կապիտալիստները կամ այս կամ այն բուրժուական կազմակերպությունները զարգացնում են սպորտը բանվոր յերիտասարդության մեջ, ապա նրանք դրանով լոկ հույս ունեն յերիտասարդ պրոլետարների ուշադրությունը շեղել դասակարգային հեղափոխական պայքարի կենսական խնդիրներից։

Խորհրդային Միությունը միակ յերկիրն է աշխարհում, ուր ընդմիշտ վոչնչացված է մարդու շահագործումը մարդու կողմից։ Սոցիալիստական կարգերն ընդմիշտ վոչնչացրել են այն պատճառները, վորոնք ծնունդ են տալիս մարդու ֆիզիքական և բարոյական այլանդակության։ Սոցիալիզմի համաշխարհային-պատմական հաղթանակների հետևանքով առաջին անգամ ստեղծված են բոլոր նյութական և քաղաքական պայմանները մարդկային անձի



հանրակողմանի զարգացման համար։

Ժողովրդի շահերը — աշխատանքի իրավունքը, հանգստի, կրթության իրավունքը — Ստալինյան Սահմանադրությամբ բարձրացված են սոցիալիստական պետության անսասան, սրբազան որենքի աստիճանի։ Մարդը մեր յերկրում հանդիսանում է հասարակության ունեցած բոլոր կապիտալներից ամենաարժեքավորը։ Աշխարհում վոչ մի տեղ աշխատավոր մարդն այնքան շրջապատված չէ սիրով և հոգածությամբ, վորքան մեզանում՝ բոլշևիկյան կուսակցության և խորհրդային կառավարության կողմից։

Յեվ հասկանալի չէ, թե ինչու այնպես տարվում է ֆիզկուլտուրայով խորհրդային յերիտասարդությունը։ Յեվ վոչ միայն յերիտասարդությունը։ Ֆիզկուլտուրայով և սպորտով կանոնավոր կերպով զբաղվելը պահպանում է առողջությունը, յերիտասարդությունը, առույգությունը, վորոնք այնքան անհրաժեշտ են լիարժեք աշխատանքի և հայրենիքի պաշտպանության համար։ Ֆիզկուլտպարապմունքները զարգացնում են կարգապահություն, ստեղծարար նախաձեռնություն, վճռականություն։ Մեր



digitised by A.R.A.R.@

Ֆիզկուլտուրնիկների օրինակից մենք տեսնում ենք, թե ինչպես է մարդը ձեռք բերում ուժ, ճարպկություն, թե ինչպես է նա ձեռք բերում հաղթանակի կամք, հերոսություն և անվեհերություն մարտի ընթացքում։ Այս գծերը, որ դաստիարակում են ժողովրդի մեջ բոլշևիկյան կուսակցությունը և կառավարությունը, տարբերում են խորհրդային նոր մարդուն։

Ֆիզկուլտուրնիկի համամիութենական օրը միլիոնավոր ուժեղ, համարձակ, հոգով և մարմնով կոփված մարդկանց ստուգատեսն է։

## ՖԻԶԻՔԱԿԱՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՆ ՅԵՎ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅՈՒՆԸ

Խորհրդային Միությունը թևակոխել է զարգացման մի նոր պատմական շրջան, սոցիալիստական անդասակարգ հասարակության կառուցումն ավարտելու և սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմին անցնելու շրջանը։ Մեր յերկրի հետագա վերելքի և բարգավաճման համար վճռական դեր է ստանում աշխատավորների կոմունիստական դաստիարակությունը։



«Մենք լավ գիտենք, որ մեր խորհրդային կարգերն արդեն իսկ ստեղծել են բոլոր նախադրյալները աշխատավորների նյութական և կուլտուրական մակարդակը հետագա արագ աճման համար, ապրանքների ու մրթերքների առատություն ստեղծելու և աշխատավորների արագ աճող կուլտուրական պահանջները բավարարելու համար, որ այժմ խնդիրը միմիայն բանվորների, գյուղացիների, ինտելիգենցիայի կոմունիստական գիտակցականության աճման մեջ է։ Կոմունիստական դաստիարակության հաջողություններից, այդ բառի լայն նշանակությամբ, կոմունիստական դաստիարակություն, որն ընդգրկի աշխատավորության վողջ մասսային և ամբողջ խորհրդային ինտելիգենցիային,— ամենից առաջ այս բնագավառի հաջողություններից է կախված մնացած բոլոր խնդիրների լուծումը» (Մոլոտով):

Խնդիրն այն է, որ օգնենք աշխատավորներին մշակելու կոմունիստական գիտակցություն, օգնենք նրանց տիրապետելու գիտական մարքսիստական-լենինյան աշխարհայեցողությանը, կոմունիզմի թեորիային։ Միլիոնավոր մասսաների մեջ աշ-



digitised by A.R.A.R.@

խատանքի հանդեպ, իրենց համար և իրենց սոցիալիստական պետության համար կատարվող աշխատանքի հանդեպ սոցիալիստական վերաբերմունք դաստիարակելը կոմունիստական դաստիարակության կենտրոնական խնդիրն է կազմում։

Կոմունիստական դաստիարակությունն ամրապնդում է ինտերնացիոնալ պարտականության զգացմունքը։ Բոցավառ սերն ու անձնուրաց նվիրվածությունը հայրենիքի նկատմամբ, սոցիալիստական հայրենիքը կրծքով պաշտպանելու պատրաստակամությունը, անխորտակելի հավատարմությունը կոմունիզմի գործին— այս ազնիվ հատկությունները բնորոշ են դարձել Խորհրդային Միության քաղաքացու համար։

Ֆիզիքական կուլտուրան աշխատավորների կոմունիստական դաստիարակության անքակտելի մի մասն է հանդիսանում։ Դա բազմիցս մատնանշել են բանվոր դասակարգի մեծ առաջնորդները՝ Մարքսը, Էնգելսը, Լենինը և Ստալինը։

Վլադիմիր Իլյիչ Լենինը, 1920 թվին հանդես գալով կոմսոմոլի III համագումարում, իր պատմական ճառում մատնանշում էր, որ աշխատանքի և պաշտպանության հան-



րակողմանիորեն պատրաստվելը յերիտասարդության հիմնական խնդիրն է։ Յեվ ի զարգացումն լենինյան ցուցումների՝ համագումարը մի վորոշում ընդունեց, վորի մեջ ասված է, թե «աճող սերնդի ֆիզիքական դաստիարակությունը հանդիսանում է յերիտասարդության կոմունիստական դաստիարակության ընդհանուր սիստեմի անհրաժեշտ տարրերից մեկը, մի սիստեմ, վորն ուղղված է դեպի ներդաշնակորեն զարգացած մարդու, ստեղծագործողի— կոմունիստական հասարակության քաղաքացու ստեղծումը»։

Ֆիզկուլտուրնիկների լավագույն բարեկամ ընկեր Ստալինը դեռևս 1930 թվին ասում էր, թե մեր յերկրում ստեղծված են բոլոր պայմանները այն բանի համար, վորպեսզի աճեցնենք խորհրդային մարդկանց նոր մի սերունդ, մարդկանց, վորոնք «... առողջ են ու կենսուրախ, ընդունակ են պատշաճ բարձրության վրա հանելու խորհրդային յերկրի հզորությունը և կրծքով պաշտպանելու նրան թշնամիների վոտնձգություններից»։

Ստալինյան իմաստուն խոսքերը մարմնավորված են սքանչելի գործերում։ Մեր յերկրում աճեցված է սոցիալիստական աշ-



digitised by A.R.A.R.@

խատանքի հերոս ստախանովականների մի բանակ, մարդկանց, վորոնք բոլշևիկյան խանդավառությամբ աշխատում են սոցիալիստական ձեռնարկություններում, կոլխոզների և սովխոզների դաշտերում։ Մեր անպարտելի Կարմիր բանակը սոցիալիստական պետության հզորության և անխորտակելիության հենարանն է։ Մեր ժողովուրդը պարծենում է Կարմիր Բանակի մարտիկների քաջարիությամբ, տանկիստների և հրետանավորների, ստալինյան հպարտ բազեների՝ օդաչուների սխրագործություններով, մարդկանց, վորոնք հուշակեցին խորհրդային զենքը Խասանի մոտ, Խալխին-Գոլում, արյունակից յեղբայրներին՝ ուկրաինացիներին և բելոռուսներին պանական ստրկությունից ազատելու համար ծավալված ազատագրական արշավանքի որերին, ֆիննական սպիտակ գվարդիականության դեմ մղված մարտերում։

Մեզանում ֆիզկուլտուրայով զբաղվում են միլիոնավոր մարդիկ։ Կուսակցությունը, կառավարությունը աշխատավորների ֆիզիքական դաստիարակությունը, գաղափարական-քաղաքական դաստիարակության հետ մեկ-



տեղ, համարում են առաջնակարգ պետական կարևորություն ունեցող մի գործ։

## ՖԻԶԻՔԱԿԱՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՅԻ ԾԱՂԿՈՒՄԸ ԽՍՀՄ-ՈՒՄ

Սոցիալիստական եկոնոմիկայի հզոր աճման հիման վրա, ստալինյան հնգամյակների հաջող կատարման հիման վրա, չըտեսնված չափերով զարգանում է սոցիալիստական կուլտուրան։ Նրա հետ մեկտեղ աճում և զարգանում է ֆիզիքական կուլտուրան։

Ֆիզկուլտ շարժման ամրապնդման համար մեծ նշանակություն ունեն ՀամԿ(բ)Կ Կ Կ-ի 1925 և 1929 թվականների վորոշումները։ Այդ վորոշումները նվիրված են հատկապես ֆիզկուլտուրային։

Կուսակցության ԿԿ-ի 1925 թվի վորոշման մեջ ասված է, վոր «ֆիզիքական կուլտուրան պետք է դիտել վոչ միայն ֆիզիքական դաստիարակության ու առողջացման տեսակետից և իբրև յերիտասարդության կուլտուրական, տնտեսական ու ռազմական պատրաստության կողմերից մեկը (հրա-

digitised by A.R.A.R.@

խատանքի հերոս ստախանովականների մի բանակ, մարդկանց, վորոնք բոլշևիկյան խանդավառությամբ աշխատում են սոցիալիստական ձեռնարկություններում, կոլխոզների և սովխոզների դաշտերում։ Մեր անպարտելի Կարմիր բանակը սոցիալիստական պետության հզորության և անխորտակելիության հենարանն է։ Մեր ժողովուրդը պարծենում է Կարմիր Բանակի մարտիկների քաջարիությամբ, տանկիստների և հրետանավորների, ստալինյան հպարտ բազեների՝ օդաչուների սխրագործություններով, մարդկանց, վորոնք հռչակեցին խորհրդային զենքը Խասանի մոտ, Խալխին-Գոլում, արյունակից յեղբայրներին՝ ուկրաինացիներին և բելոռուսներին պանական ստրկությունից ազատելու համար ծավալված ազատագրական արշավանքի օրերին, ֆիննական սպիտակ գվարդիականության դեմ մղված մարտերում։

Մեզանում ֆիզկուլտուրայով զբաղվում են միլիոնավոր մարդիկ։ Կուսակցությունը, կառավարությունը աշխատավորների ֆիզիքական դաստիարակությունը, գաղափարական-քաղաքական դաստիարակության հետ մեկ-



տեղ, համարում են առաջնակարգ պետական կարևորություն ունեցող մի գործ։

## ՖԻԶԻՔԱԿԱՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՅԻ ԾԱՂԿՈՒՄԸ ԽՍՀՄ-ՈՒՄ

Սոցիալիստական եկոնոմիկայի հզոր աճման հիման վրա, ստալինյան հնգամյակների հաջող կատարման հիման վրա, չըտեսնված չափերով զարգանում է սոցիալիստական կուլտուրան։ Նրա հետ մեկտեղ աճում և զարգանում է ֆիզիքական կուլտուրան։

Ֆիզկուլտ շարժման ամրապնդման համար մեծ նշանակություն ունեն ՀամԿ(բ)Կ Կ Կ-ի 1925 և 1929 թվականների վորոշումները։ Այդ վորոշումները նվիրված են հատկապես ֆիզկուլտուրային։

Կուսակցության ԿԿ-ի 1925 թվի վորոշման մեջ ասված է, վոր «ֆիզիքական կուլտուրան պետք է դիտել վոչ միայն ֆիզիքական դաստիարակության ու առողջացման տեսակետից և իբրև յերիտասարդության կուլտուրական, տնտեսական ու ռազմական պատրաստության կողմերից մեկը (հրա-

digitised by A.R.A.R.@

ձգային սպորտ և այլն), այլև իբրև մասսաների դաստիարակության մեթոդներից մեկը (ինչքանով որ ֆիզիքական կուլտուրան զարգացնում է կամքը, մշակում է կոլեկտիվ ունակություններ, հաստատակամություն, սառնարյունություն և այլ արժեքավոր հատկություններ) և դրա հետ մեկտեղ իբրև մի միջոց՝ բանվորական և գյուղացիական լայն մասսաներին համախմբելու այս կամ այն կուսակցական, խորհրդային ու պրոֆեսիոնալ կազմակերպությունների շուրջը, վորոնց միջոցով բանվորա-գյուղացիական մասսաները ներգրավվում են հասարակական-քաղաքական կյանքի մեջ»։

Կուսակցության ԿԿ-ի այս ցուցումը պահպանում է իր ուժն ու գործունեյությունը նաև այժմ, յերբ ֆիզկուլտշարժումը ԽՍՀՄ-ում գտնվում է նոր վերելքի շրջանում։

Նույնքան կարևոր է նաև ՀամԿ(բ)Կ ԿԿ-ի յերկրորդ վորոշումը, վոր ընդունվել է 1929 թվին։ Այդ վորոշման մեջ ֆիզկուլտշարժման ընդհանուր վիճակը անբավարար էր համարվում, այնտեղ նշվում եյին ֆիզկուլտ աշխատանքի հիմնական թերությունները. «բանվոր դասակարգի լայն մասսաների թույլ ընդգրկում, ռեկորդսմենական թեքում,



գերատեսչական անհամերաշխություն, պարալելիզմ և այլն»։ Վորոշման մեջ մատնանշված եյին խորհրդային ֆիզկուլտշարժման հետագա զարգացման ուղիները։

Սոցիալիստական պետության հոգատարությունը աշխատավորների առողջության և ֆիզիքական դաստիարակության մասին իր արտացոլումն է գտնում հիանալի թվերի մեջ։ 1940 թվի բյուջեյով առողջապահությանը և ֆիզկուլտուրային հատկացվում է համարյա 10 միլիարդ ռուբլի։

Մեր յերկիրն ավելի ու ավելի յե ծածկվում սպորտային հիմնարկների ցանցով։ Այժմ Միության ֆիզկուլտկազմակերպությունները ունեն 4 հազար սպորտային հրապարակ ֆուտբոլի դաշտերով և 45 հազար վոլեյբոլի ու բասկետբոլի հրապարակ։ Անցած ձմեռը աշխատում եյին 6 հազար դահուկային կայաններ։ Ամռանը բացվեցին 500-ից ավելի ջրային կայաններ և 1500 թենիսի կորտեր։ Միության բազմաթիվ խոշորագույն քաղաքներում կառուցված են հիանալի ստադիոններ։ Մոսկվայի «Դինամո» ստադիոնը, վորը տեղավորում է ավելի քան 80 հազար հանդիսական, արդարացիորեն համարվում է լավագույններից մեկը



digitised by A.R.A.R.@

Եվրոպայում։ Նույն Մոսկվայում կառուցվում է աշխարհի ամենամեծ ստադիոնը՝ Իզմայլովսկի ստադիոնը։ Նա կլինի ԽՍՀՄ-ի Կենտրոնական ստադիոնը։

Ֆիզիքական կուլտուրայի վեց ինստիտուտները, 25 տեխնիկումները, ֆիզկուլտ թեքումով 8 մանկավարժական ուսումնարաններ պատրաստում են ֆիզկուլտուրայի մասնագետների կադրեր։ Այնպիսի Բուհեր, ինչպես Մոսկվայի Ստալինի անվան ֆիզկուլտուրայի շքանշանակիր ինստիտուտը և Լենինգրադի Լեսգաֆտի անվան ֆիզկուլտուրայի շքանշանակիր ինստիտուտը, հանդիսանում են ֆիզկուլտուրայի խոշորագույն ուսումնական հիմնարկները։

10 ֆիզկուլտ թերթերի և ժուռնալների ամսական տիրաժը հասնում է 750 հազար օրինակի։ Պետական հրատարակչությունները ամեն տարի հսկայական տիրաժներով լույս են ընծայում ֆիզիքական կուլտուրայի և սպորտի հարցերին նվիրված հարյուրավոր գրքեր։ «Պատրաստ աշխատանքի և ԽՍՀՄ-ի պաշտպանության» ժողովածուն, որը հրատարակվել է 1940 թվին, արդեն տարածվել է 230 հազար օրինակ։

Մեր յերկրում լայն տարածում է ստացել



բուժական ֆիզկուլտուրան։ Այն արմատացվում է սանատորիաներում, հիվանդանոցներում, հանգստի տներում։ Այստեղ հատկապես կազմված ֆիզիքական վարժությունները օգնում են բժշկական գիտությանը, նպաստում են հիվանդների ամենաարագ առողջացմանը։ Ֆիզկուլտուրայով զբաղվում են միլիոնավոր խորհրդային յերեխաներ դպրոցներում, պիոներական ջոկատներում և ճամբարներում։



Ֆիզկուլտուրնիկի յերկրորդ Համամիութենական օրը խորհրդային սպորտսմենները դիմավորում են նոր ռեկորդներով և սպորտային աչքի ընկնող նվաճումներով։ Անցած տարի շատ բան արվեց իրագործելու համար խարհրդային ֆիզկուլտուրնիկների հետևյալ լոզունգը. «Բոլոր համաշխարհային ռեկորդները պետք է պատկանեն Խորհրդային Միությանը»։

Համաշխարհային ռեկորդների համար մղվող պայքարում առաջին և պատվավոր տեղը գրավում են մեր շտանգիստները— ծանրությունների բարձրացման վարպետ-



digitised by A.R.A.R.@

ները։ Գոյություն ունեն 35 պաշտոնական համաշխարհային բուրժուական ռեկորդներ։ Մեր շտանգիստները խփել են 23 ռեկորդ։ Նրանք ամենաուժեղներն են հանդիսանում ամբողջ աշխարհում։ Խորհրդային սպորտն իրավամբ պարծենում է իր ուժեղ ռեկորդսմեններով— Կուցենկոյով, Շատովով, Կոշելևով, Բոժկոյով, Խոտիմսկիով, Կոշաևով, Նովակով, Համբարձումյանով, Կասյանով, Մանուկյանով և ուրիշներով։

Բերենք մի քանի թիվ՝ ցույց տալու համար շտանգիստների նվաճումները։ Ծանրությունների բարձրացման գծով ԽՍՀՄ-ի բացարձակ չեմպիոն Կիևցի Կուցենկոն յերկու ձեռքով հրեց 170,3 կիլոգրամանոց շտանգան։ Ավելի քան տաս և կես փութ։ Միայն աջ ձեռքով նա հրեց 114,35 կիլոգրամ։ Մոսկվացի Ալեքսանդր Բոժկոն, Կարմիր Բանակի սան, տանկիստ, յերկու ձեռքով հրեց 153,05 կիլոգրամ, իսկ ինքը քաշում է 74 կիլոգրամ։

Համաշխարհային շատ ռեկորդներ են նվաճել խորհրդային լողորդները։ Ամբողջ աշխարհին հայտնի յե կարմիր նավատորմային Սեմյոն Բոյչենկոյի անունը։ Նա և լենինգրադցի Լեոնիդ Մեշկովը բրաս ոճի

կրծքալողում գերազանցեցին բոլոր համաշխարհային ռեկորդները 100, 200, 400 և 500 մետր դիստանցիայի վրա։

Բարելավվեցին նաև խորհրդային թեթևատլետների վորակական նվաճումները։ Անցյալ տարի 20-ամյա սպորտսմենուհի Նինա Դումբաձեն սկավառակը նետեց 49 մետր 31 սանտիմետր հեռավորությամբ։ Մինչև այժմ համաշխարհային ռեկորդը պատկանում եր գերմանացի սպորտսմենուհի Մաուերմայերին, վորը սկավառակը նետել եր 48 մետր 31 սանտիմետր հեռավորությամբ։

Մեր սպորտսմեններն առջևից են ընթանում նաև սպորտի մյուս տեսակների գծով։

400 մետրանոց վազքում յերկար ժամանակ համաշխարհային ռեկորդը պահում եր անգլուհի Լայդդը։ Նա այդ դիստանցիան անցնում եր 1 րոպե 0,4 վայրկյան ժամանակում։ Անցյալ տարի Կիևցի Պիժուրինան այդ դիստանցիայի վազքում ցույց տըվեց բացառիկ արագություն և 400 մետրն անցավ 57,7 վայրկյանում։ 500 մետրանոց վազքում համաշխարհային նվաճումը պատկանում եր Վալասևիչին— 1 րոպե 17,3 վայրկյան։ Խարկովցի Շիլոն այդ դիստան-



digitised by A.R.A.R.@

ցիան անցավ 1 րոպե 15,7 վայրկյանում։ Նմանապես Մոսկվացի Վասիլևային հաջողվեց 2 րոպե 58,4 վայրկյանում, այսինքն համաշխարհային ռեկորդից 2,2 վայրկյան ավելի արագ, անցնել 1 հազար մետր դիստանցիա։

Հեռավոր դիստանցիաների վազքում շատ տարիներ շարունակ ՍՍՀՄ-ի առաջնությունն իրենց ձեռքումն են պահում սպորտի վաստակավոր վարպետներ— շքանշանակիր Զնամենսկի յեղբայրները։ Անցյալ տարի նրանք գերազանցեցին 10 հազար մետրանոց վազքի նախկին համամիութենական ռեկորդը։ Սերաֆիմ Զնամենսկին՝ 30 րոպե 44,8 վայրկյան, Գեորգին՝ 30 րոպե 45,8 վայրկյան։ Սերաֆիմը գրավեց վեցերորդ, Գեորգին՝ յոթերորդ տեղը անցած տարվա լավագույն համաշխարհային արդյունքների մեջ։

Առաջ են գալիս նաև նոր հիանալի վազողներ։ Անցյալ տարի Մոսկվացի Պուգաչևսկին չորս համամիութենական ռեկորդ սահմանեց 800, 1000, 1500 և 2000 մետրանոց վազքում։ «Կոմսոմոլսկայա Պրավդա» թերթի անվան կրոսսում վորը տեղի ունեցավ այս



տարվա մայիսի 24-ին, առաջին տեղը գրավեց Մոսկվայի տեքստիլ ինստիտուտի ուսանող Լավրովը։ Նրան հաջողվեց Ս. Զնամենսկուց առաջ անցնել։

Բարձր գնահատականի յեն արժանի սպորտի վաստակավոր վարպետ Ն. Ոզոլինի նվաճումները։ Նա ձողով թռիչքի մեջ վերցրեց 4 մետր 30 սանտիմետր բարձրություն —ամբողջ 3 սանտիմետր ավելի բարձր քան այն թռիչքը, վորով Նորվեգիացի Կաասը յեվրոպական ռեկորդ եր սահմանել։

Մեր սպորտի վարպետները շարքային խորհրդային մարդիկ են։ Դրանք պրոֆեսիոնալ սպորտսմեններ չեն։ Բուրժուական սպորտսմենն աշխատում ե փողի համար, ընկնում ե ռեկորդի հետևից, վորպեսզի ապահովի իր գոյությունը։ Նա հնազանդ գործիք ե անտրեպրենյորի ձեռքում։ Տարիքի հետ միասին գնում են ուժերը, և ձեռնարկատերը սպորտսմենին դուրս ե շպրտում վորպես անպետք իր։ Հայտնի յե արտասահմանյան շատ սպորտսմենների ցավակցության արժանի վիճակը, մարդկանց, վորոնք վողբալի ձևով են վերջացրել իրենց նախապես փայլուն կարյերան։

Խորհրդային վարպետները սպորտը սի-



digitised by A.R.A.R.@

րում են նրա համար, որ նա կոփում է նրանց առողջությունն ու կամքը։ Հոգով և մարմնով ուժեղ, նրանք նորանոր ռեկորդների չեն ձգտում ոչ թե փառասիրությունից դրդված, վաստակի հետամտությունը չէ, որ ղեկավարում է նրանց պայքարը համաշխարհային բարձրագույն նվաճումների համար։ Խորհրդային վարպետին վոգեշնչում է այն գիտակցությունը, որ նրա հաղթանակը դառնում է ֆիզկուլտուրնիկների վողջ բազմամիլիոն բանակի սեփականությունը։ Նրա յուրաքանչյուր նվաճումը նոր աստիճանի վրա է բարձրացնում առողջ ստեղծագործական մրցակցությունը։ Այդ պատճառով էլ մեր երկրի լավագույն սպորտսմենները հաճույքով են իրենց փորձը հաղորդում երիտասարդ ֆիզկուլտուրնիկներին։

Շատ վարպետներ սպորտային պարապմունքները զուգակցում են իրենց հիմնական ու սիրելի կենսական պրոֆեսիայի հետ։ Սերաֆիմ Զնամենսկին բժշկական ինստիտուտի ուսանող է։ Բոնցքամարտի գծով ԽՍՀՄ-ի բացարձակ չեմպիոն Վիկտոր Միխայլովը շոֆեր է։ Գրոսմեյստեր Միխայիլ Բոտվիննիկն ինժեներ է։ Նրանք, մեր վար-



պետները, մեր կողքին աշխատում են գործարաններում, ֆաբրիկաններում, հիմնարկություններում։ Նրանց մեջ մենք տեսնում ենք այն բանի օրինակը, թե ինչի կարող է հասնել մեր հայրենիքի յուրաքանչյուր քաղաքացին։

Ինչքան լայն է ծավալվում ֆիզկուլտշարժումը, այնքան շատ են առաջ գալիս նոր տաղանդավոր սպորտսմեններ, և դրանումն է այն բանի երաշխիքը, որ խորհրդային ֆիզկուլտուրան անդուլ կերպով նվաճելու է սպորտային վարպետության նորանոր բարձունքներ։

Շատ ռեկորդսմեններ բարձր արդյունքներ են ձեռք բերել շնորհիվ այն բանի, որ ծառայել են Կարմիր բանակում, ուր բարձր հիմքերի վրա է դրված ֆիզկուլտուրան։ Դահուկային մրցումների պատմության մեջ առաջին անգամ անցյալ ձմեռը անդկացվեց 100 կիլոմետրանոց վազք։ Հաղթող դուրս եկավ կրտսեր լեյտենանտ Ա. Նովիկովը։ Նա դիստանցիան անցավ 8 ժամ 22 րոպե 44 վայրկյան ժամանակում։

Անցած ձմեռը բարձր արագության և տեխնիկայի աճում ցույց տվին խորհրդային շատ դահուկավորներ։ Տրամպլինից դա-



digitised by A.R.A.R.@

հուկներով թռիչք կատարելու մեջ միջազգային աչքի ընկնող արդյունք ցույց տվեց 18 տարեկան մի Մոսկվացի՝ Կուդրյաշովը։ Նա թռավ 82 մետր։ Դա տվյալ սեզոնի լավագույն արդյունքն էր ամբողջ աշխարհում։

Ձմեռը բեղմնավոր չեղավ նաև խորհրդային չմշկողների համար։ Սպրինտյոր Կոնստանտին Կուդրյավցևը 500 մետրն անցավ 42 վայրկյանում, յերկու տասյերորդական վայրկյանում միայն հետ մնալով համաշխարհային ռեկորդից։

Ավելի ու ավելի յե զարգանում մոտոցիկլետային և ավտոմոբիլային սպորտը։ Թեև քանակական աճումն այստեղ, դժբախտաբար, մնում է անբավարար, բայց նվաճումների վորակը, անտարակույս, բարելավվում է։ Անցյալ տարի սահմանվեցին 28 նոր համամիութենական ռեկորդներ մոտոցիկլետի համար։ Նախկինում ցույց տրված միջին ժամային արագությունը կազմում էր 138,36 կիլոմետր։ Այժմ այն հասցված է 158,66 կիլոմետրի։ Լավ արագություն է մոտոցիկլի համար։

Ամենասիրելի և մասսայական խաղը խորհրդային Միության մեջ հանդիսանում է ֆուտբոլը։



Մեզանում ֆուտբոլ են խաղում 300 հազար հոգի։ Իսկ ինչքան «սիրողներ» կան։ Ֆուտբոլային մատչերը մեզանում միշտ լեփ-լեցուն են հանդիսականներով։ Հատուկ ժողովրդականություն են վայելում այնպիսի որացույցային խաղեր, ինչպես «ԽՍՀՄ-ի առաջնությունը» և «ԽՍՀՄ-ի գավաթը»։ Ֆուտբոլային մարտերում կոփված, հայտնի թիմերի կողքին, ինչպիսիք են Մոսկվայի «Սպարտակ», «Դինամո», Կարմիր Բանակի Կենտրոնական Տան թիմերը, մենք հանդիպում ենք յերիտասարդ թիմերի։ Ստալինգրադի տրակտորային գործարանի «տրակտոր» թիմը չորրորդ տեղը գրավեց ԽՍՀՄ-ի առաջնության ֆուտբոլային խաղերի ընթացքում 1939 թվին։ Հիանալի կլաս է ցույց տալիս Թբիլիսիի «Դինամո» թիմը։ Մեր ֆուտբոլիստների մեջ շատ կա յեռանդ, համառություն, մարտական նախաձեռնություն։ Ուստի առավել ևս լրջությամբ նրանք պետք է զբաղվեն խաղի տեխնիկայով և տակտիկայով, վորպեսզի նրան տիրապետեն կատարելապես։

Խորհրդային ֆիզկուլտուրան բազմազան է և հարուստ իր ձևերով։ Ֆիզկուլտուրնիկների մեջ պատվավոր տեղ են գրավում աշ-



digitised by A.R.A.R.@

պինիստները։ Սպորտի այս տեսակը թերևս ավելի մեծ չափով, քան մորևէ այլ տեսակը, դաստիարակում է ճարպկություն, համարձակություն և վճռականություն։ Անցյալ տարի սպորտային «Լոկոմոտիվ» ընկերության ալպինիստներ Վավրինյուկը, Դենշչինը և Հեստերովիչը բարձրացան Կամչատկայի թերակղզու ամենաբարձր կետը— Կլյուչևսկայա կոնաբլուրը։ Այդ վերելքն ալպինիստները կատարեցին 40° սառնամանիքում։ Ի՞նչպիսի համառություն և սառնարյունություն։ Ի՞նչպիսի ֆիզիքական կոփում էր պահանջում այդ վերելքը։

Կաշ- Կատաշ լեռնանցքը (Կաբարդինո-Բալկարիա) երկար տարիներ անմատչելի էր համարվում։ Նրա հնազանդեցմանը ձեռնամուխ եղան ալպինիստներ Կալաշնիկովը, Ստրեկալովը և Խարզայեվը։ Խիզախ ձեռնարկումը լիակատար հաջողությամբ վերջացավ։

Բարձր լեռնային ճամբարներում անցյալ տարի պատրաստված են մոտ 12 հազար «ԽՍՀՄ 1-ին աստիճանի ալպինիստ» կրծքանշանակիրներ։ Մեր անծայրածիր հայրենիքի լեռնաշղթաներով, անտառներով և գետերով ընթանում են տուրիստական ջո-



կատները։ Նրանք ամրացնում են իրենց առողջությունը, ճանաչում են իրենց հայրենիքը և ուժեր են հավաքում պայքարի ու աշխատանքի համար։

Անվիճելի չեն խորհրդային շախմատային շարժման հաջողությունները։ Մասշտաբի, շախմատի մասսայական տարածման տեսակետից ԽՍՀՄ-ին հավասարվել չի կարող աշխարհիս վոչ մի երկիրը։ Շախմատային խաղի ականավոր վարպետների մրցությունները մեկ անգամ էլ հաստատեցին, վոր խորհրդային շախմատիստներին յուրահատուկ է սեփական մարտական մի վոճ։ Այնպիսի գրոսմեյստերներ, ինչպես Բոտվիննիկը, Լևենֆիշը, Կոտովը, կատարելապես տիրապետում են շախմատային արվեստին և հանդիսանում են համաշխարհային նշանավոր շախմատային վարպետների լուրջ մրցակիցները։

Մենք թվեցինք լոկ խորհրդային սպորտի ամենից ավելի աչքի ընկնող հաղթանակները։ Մեր հրաձիգները, մեր չիգիտները, լողորդները, վազողները, նիզակ, նռնակ, մուրճ նետողները, տասնյակ և տասնյակ հազարավոր ֆիզկուլտուրնիկները պայքարում են համաշխարհային ռեկորդներ նվաճելու համար։ Չեվ տարակույս չկա, վոր



digitised by A.R.A.R.@

այդ ռեկորդների ամենամոտ ապագայում կպատկանեն Խորհրդային Միությանը։

Խորհրդային ֆիզկուլտուրայի ուժը նրա մասսայականության մեջ է։ Ձեռնարկություններում և հիմնարկություններում, մանկապարտեզներում և դպրոցներում, Կարմիր Բանակում ֆիզկուլտուրայով պարապում են միլիոնավոր մարդիկ։ Բազում միլիոնավոր աշխատավորներ առավոտները պարապում են ռադիոգիմնաստիկայով։ Զանազան ըսպորտային կազմակերպություններում կան մի քանի միլիոն մարդիկ։

Ֆիզկուլտ շարժման հզոր հոսանքի մեջ են մտել կոլխոզային յերկրագործության մասսաները։ Ֆիզիքական կուլտուրան ավելի ու ավելի խորն է թափանցում կոլխոզները, սովխոզները և ՄՏԿ-ները։ Կոլխոզային գյուղն ունի տասնյակ հազարավոր ֆիզկուլտ կոլեկտիվներ, վորոնք ընդգրկում են հարյուր հազարավոր մարդկանց։ Հենց միայն անցյալ տարի կոլխոզներում «Պատրաստ աշխատանքի և ԽՍՀՄ-ի պաշտպանության» կոմպլեկսից նորմաներ են հանձնել 177 հազար կոլխոզնիկներ և կոլխոզնիկուհիներ։ Իսկ ընդամենը կոլխոզներում պատրաստված են 677 հազար «Պատրաստ



աշխատանքի և պաշտպանության» կրծքանըշանակիրներ։

Կրասնոդարի յերկրամասի Սլավյանսկայա ստանցիան իրավամբ պարծենում է իր ֆուտբոլային և բասկետբոլային թիմերով, վորոնք առաջին տեղերն են գրավել յերկրամասային մրցություններում։ Այդ ստանիցայի թեթև ատլետներն անցյալ տարի հաջողությամբ հանդես յեկան Մոսկվայում Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսում։ Պոլտավայի մարզի «Զավետ Լենինա» կոլխոզը և շատ ուրիշ կոլխոզներ իրենց միջոցներով կառուցել են հիանալի ստադիոններ 1000-ից մինչև 1500 հանդիսական տեղավորող ամբիոններով։

Լայնորեն զարգացած է ֆիզկուլտ շարժումը բոլոր միութենական հանրապետություններում։ Այնտեղ, ուր մինչև հոկտեմբերյան հեղափոխությունը ժողովուրդը դատապարտված եր կիսաստրկական գոյության, այժմ ֆիզկուլտուրան դարձել է յերիտասարդության սիրելի գործը։

Խորհրդային Միության յեղբայրական հանրապետություններում պատրաստված են հարյուր հազարավոր ՊԱՊ կրծքանշանակիրներ, աճել են սպորտի տաղանդավոր



digitised by A.R.A.R.@

վարպետների կադրերը։ Ադրբեջանական ԽՍՀ-ի ֆիզկուլտուրնիկները փոխանցիկ կարմիր դրոշակ են նվաճել լավագույն նախապատրաստման և 1939 թվի հուլիսի 18-ի Համամիութենական ֆիզկուլտ շքահանդեսում ունեցած ելույթի համար։

Ֆիզկուլտ շարժման մեջ, ինչպես սոցիալիստական շինարարության բոլոր բնագավառներում, տարեց-տարի աճում է կանանց դերը։ Ֆիզկուլտուրնիկների ընդհանուր թվի 31%-ը կազմում են կանայք։

1939 թվին կառավարությունը սահմանեց ֆիզկուլտուրնիկի Համամիութենական օր—հուլիսի 18-ը։

Այս հիանալի տոնը բացառիկ վերելքով անցավ Խորհրդային մեծ Միության բոլոր քաղաքներում և գյուղերում։ Մոսկվայում, Կարմիր հրապարակում, կայացավ Համամիութենական ֆիզկուլտ շքահանդես։ 11 յեղբայրական միութենական հանրապետությունների լավագույն ֆիզկուլտուրնիկներ ցուցադրեցին իրենց նվաճումները։

Հուլիսի 20-ին շքահանդեսին մասնակցող ֆիզկուլտուրնիկներն ընդունվեցին Կրեմլում ընկեր Ստալինի, կուսակցության և կառավարության ղեկավարների կողմից։ Անմո-



ռանալի այդ հանդիպումը ֆիզկուլտուրնիկների մեջ բոցավառ ցանկություն առաջացրեց է՛լ ավելի լավ աշխատելու և կուսակցության բարձր վստահությունն արդարացնելու ճարպկության և քաջության, ռազմական խիզախության և աշխատանքային արիության նորանոր օրինակներով։

## ՎՃՌԱԿԱՆՈՐԵՆ ՊԱՅՔԱՐԵԼ ԹԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԴԵՄ

Խորհրդային ֆիզկուլտ շարժումը չի կարող կանգ առնել ձեռք բերվածի վրա։Խնդիրը կայանում է նրանում, որ ֆիզիքական դաստիարակությամբ ընդգրկվեն նորանոր միլիոնավոր աշխատավորներ։

Մեր ֆիզկուլտ շարժումն այնքան արագ առաջ կնթանա, որքան վճռականորեն մենք պայքարենք այն թերությունների դեմ, որոնք թույլ չեն տալիս, որ ֆիզկուլտուրան բարձրանա կուսակցության և կառավարության կողմից առաջադրված խնդիրների մակարդակին։

Իրենց բոլոր անվիճելի նվաճումներով հանդերձ, խորհրդային ֆիզկուլտուրնիկները



digitised by A.R.A.R.@

պարտք են մնում հայրենիքի առջև։ Կամավոր սպորտ ընկերությունները դեռ ամենևին ել ամբողջությամբ չեն օգտագործում նրանց հատկացված վիթխարի միջոցներն ու հնարավորությունները։

Դեռ շատ բան պետք է արվի կազմակերպորեն ամրապնդելու համար ֆիզկուլտուրայի ստորին կոլեկտիվները քաղաքում և հատկապես գյուղում։ Կամավոր սպորտ ընկերությունները միշտ և ամենուրեք իրենց աշխատանքի մեջ հենվում են միմիայն հաստիքային աշխատողների վրա։ Քիչ և վատ են պայքարում նրանք հասարակական հրահանգիչների կադրերի դաստիարակման համար։ Առանձնապես վատ է գործը գյուղի հրահանգչական կադրերի վերաբերյալ։ Չեն օգտագործվում գյուղին օգնություն ցույց տալու այնպիսի ձևերը, ինչպես քաղաքային կազմակերպությունների շեֆությունը։ Մի՞թե այնպիսի հզոր ֆիզկուլտ ընկերություններ, ինչպես «Սպարտակ»-ը, «Լոկոմոտիվ»-ը, «Պիշչեվիկ»-ը ի վիճակի չեն գյուղական կոլեկտիվների համար առանձնացնելու փորձված կազմակերպիչ-հրահանգիչների կադրեր։

Անբավարար չափով են աշխատանքի



մասնակից դարձվում Կարմիր բանակից վերադարձած ընկերները։ Կարմիր բանակում մարտիկի ֆիզիքական պատրաստությունը մարտական ուսուցման բաղկացուցիչ մասն է հանդիսանում։ Կարմիր բանակից վերադառնում են ֆիզիքական վարժություններով կոփված մարդիկ, հմուտ կազմակերպիչներ, գրագետ, գիտակ ֆիզկուլտուրնիկներ, և մեր բոլոր կազմակերպությունների խնդիրն է հանդիսանում հմտորեն օգտագործել այդ կադրերին։

Մինչև այժմ ել շատ ֆիզկուլտ կազմակերպություններ համառորեն չեն ուզում հասկանալ այն բանը, որ ֆիզկուլտ ակտիվը վճռական դեր է խաղում մասսայական աշխատանքի մեջ։ «Գոզնակ» ֆաբրիկայի տեսակավորման ցեխի ֆիզկուլտ կազմակերպիչ կոմսոմոլկա Մարիա Գորշունովան ցեխում ագիտացիան մեծ աշխատանք է կատարել։ Նրա շնորհիվ այստեղ կանոնավոր կերպով ֆիզկուլտ լիցք է անցկացվում։ Ցեխի ամբողջ յերիտասարդությունը անդամագրվել է «Պրավդա» կամավոր սպորտ ընկերությանը, հանձնելով «Պատրաստ աշխատանքի և պաշտպանության» նորմաները։



digitised by A.R.A.R.@

Ցեվս մի օրինակ։ Ցախրոմայի մանածագործական ֆաբրիկայում փականագործ Ֆիլիպովը կազմակերպել է 70 հոգուց բաղկացած մի խումբ, և այդ խումբը կանոնավոր կերպով պարապում է գիմնաստիկայով։

Հարկավոր է ավելի համարձակորեն օգտագործել ֆիզկուլտուրնիկների և յերիտասարդության նախաձեռնությունն ու ինքնագործունեությունը, և այն ժամանակ մեր կազմակերպությունները ավելի քիչ կգանգատվեն աշխատողների պակասի մասին։

Կան դեռևս այնպիսի սպորտ ընկերություններ և կոլեկտիվներ, ուր ֆիզկուլտուրնիկին այնպես են վերաբերվում, ինչպես ջերմոցային մի բույսի։ Օրինակ, յեթե հեռուստն արշավ է անցկացվում, ապա ընտրում են ասֆալտապատված խճուղի, վորպեսզի քիչ փոշի լինի և շարասյունի հետեվից կարողանա գնալ պատրաստի ճաշ փոխադրող ավտոմեքենան։ Կամ թե կազմակերպվում է դահուկային վազք, և պատրաստակամ կազմակերպիչները համարյա թե ամեն մի կիլոմետրի վրա դահուկավորներին դիմավորում են տաք սուրճով, կակաոյով և կարկանդակներով։ Մի



քանի ֆիզկուլտ ղեկավարներ անպատասխանատու վերաբերմունք են ցույց տալիս դեպի պետական միջոցները և հասարակական փողի հաշվին խրախուսում են պատահաս-սպորտսմենների ամեն տեսակի քմահաճույքները։ Այդպիսի «ջերմանոցային» պրակտիկան վոչ մի առնչություն չունի խորհրդային դաժան և առնական սպորտի հետ, վորը դաստիարակում է կոփված, տոկուն, ուժեղ մարդկանց։

Հարկավոր է ավելի լավ կազմակերպել սպորտի պաշտպանական-կիրառական տեսակների մասսայականացումը, ավելի շատ և ավելի լավ ագիտացիա մղել դահուկի, ալպինիզմի և մոտոցիկլետային սպորտի օգտին, ձեռնամարտի արվեստի օգտին։ Հարկավոր է դրանք ավելի շատ և ավելի լայն չափերով արմատավորել ֆիզկուլտ կոլեկտիվների պրակտիկայում։

Դեռևս լուրջ թերություններ ունի նաև ֆիզկուլտ կոլեկտիվների կենցաղը։ Դա քաղաքական-դաստիարակչական թույլ աշխատանքի հետեվանք է։ Դժբախտաբար, յերբեմն դեռևս նկատվում են խորհրդային ֆիզկուլտուրային խորթ յերեվույթներ, վորոնք գալիս են բուրժուական բարքերից։

digitised by A.R.A.R.@ 

Սպորտսմենների հրապուրումը, որն առանձնապես նկատվում է ֆուտբոլային թիմերի պրակտիկայում, կոպտությունը, անկարգապահությունը և անկուլտուրականությունը սպորտային մրցությունների ժամանակ, հարբեցողությունը, թափթփվածությունը— այս բոլորը սաղական չեն մեր Ֆիզկուլտուրային, մեր ֆիզկուլտ կոլեկտիվներին։ Խորհրդային ֆիզկուլտուրնիկի պատիվն ու արժանապատվությունն արատավորող այս չերևույթներն անհանդուրժելի չեն։ Այդ «տրադիցիաների» կրողներին պետք է անխնա խարազանել և հասարակայնության դատաստանին չենթարկել։ Կոմսոմոլի ակտիվ մասնակցությամբ պետք է վճռականորեն ուժեղացնել ֆիզկուլտուրնիկների քաղաքական դաստիարակությունը։

Հատուկ ուշադրության է արժանի խորհրդային չերեխաների ֆիզիքական դաստիարակությունը։ Այս բնագավառում անվիճելի հաջողություններ են ձեռք բերված։ Հարյուր հազարավոր չերեխաներ կազմակերպված են դպրոցական ֆիզկուլտ կոլեկտիվներում, սպորտով են զբաղվում կամավոր սպորտ ընկերությունների մանկական



խմբերում, պարկերին և հրապարակներին կից սպորտային խմբերում։

Անցյալ տարի պատանի սպորտսմենները և սպորտսմենուհիները սպորտային բարձր նվաճումներ ձեռք բերին։ Օգոստոս ամսին Թբիլիսիի համամիութենական մրցություններում պատանի լողորդները սահմանեցին Միության 17 նոր ռեկորդ, իսկ այս տարվա հունվար ամսին Մինսկում՝ ևս 11 նոր նվաճում։ Խարկովում 1939 թվի մրցություններում պատանի թեթև ատլետները սահմանեցին համամիութենական 26 նոր նվաճում։ Մեծ հաջողություններ են ձեռք բերել պատանի գիմնաստները։ Գիմնաստիկայի գծով ՌԽՖՍՀ առաջնության մրցություններին մասնակցում էյին 562 հոգի։ Նրանցից 376 հոգի կատարեցին իրենց տարիքի համար սահմանված առաջին և չերկրորդ կարգի նորմաները։ Գերազանց հաջողությունների չեն հասել նաև պատանի դահուկավորները։

Բայց տակավին շատ բան է խանգարում չերեխաների մեջ տարվող մասսայական ֆ.ւզկուլտ և պաշտպանական աշխատանքին՝ հարկ չեղած թափն ու վորակը ձեռք բերելու համար։ Բավականաչափ լայն չի կազ-



digitised by A.R.A.R.@

մակերպված արտադպրոցական ֆիզկուլտ աշխատանքը։ Շատ քիչ սպորտային հրապարակներ կան բակերում, բուլվարներում, սկվերներում։ Այստեղ լավ օրինակները միավորներով են հաշվվում։

«Թշնամուն համարձակորեն դիմագրավելու համար,— ասում էր ՀամԼԿՅԵՄ ԿԿ-ի քարտուղար ընկ. Միխայլովը,— դժվարությունները անվախորեն հաղթահարելու համար, հարկավոր է լինել առողջ, ուժեղ, մարզված, կարողանալ լավ վազել և թռչել, դիպուկ կերպով կրակել, գերազանց կերպով լողալ։ Ցերեխաների մեջ էլ, բնականաբար, ձգտում է ստեղծվում որը որին պարապելու սպորտով, վարժեցնելու մարմինը, կոփելու խարակտերը»։

Դպրոցները և ֆիզկուլտ կազմակերպությունները, ժողովրդական կրթության օրգանները տեղական կոմսոմոլիստական և պրոֆմիութենական կազմակերպությունների ոգնությամբ պետք է յերեխաների այդ բնական ձգտումն ուղղեն դեպի հարկ յեղած հունը։

1940 թվականը պետք է նշանավորվի յերեխաների և պատանիների մեջ տարվող ֆիզկուլտ աշխատանքի վճռական բարելա-



վումով։ Դա նպաստում է սոցիալիստական պետության շահերին, մեր հայրենիքի շահերին։ Դա պահանջն է խորհրդային ժողովրդի, վորը հավանություն տըվեց ընդհանուր զինվորական պարտականության մասին ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի արտակարգ IV սեսիայի ընդունած օրենքին։ Հարկավոր է հիշել ընկեր Վորոշիլովի այն խոսքերը, թե դպրոցներում տարրական ռազմական և նախազորակոչային պատրաստությունը լավ կազմակերպելու դեպքում «պատանիները կասվորեն ռազմական շարքը, հրաձգային գործը, կգիտենան հակաոդային ու հակաքիմիական պաշտպանության կանոնները և, վորը գլխավորն է, կստանան ֆիզիքական լավ վարժություն ու կոփվածք»։

## ՊԱՊ ԿՈՄՊԼԵՔՍԸ ՖԻԶԻՔԱԿԱՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՅԻ ՍԻՍՏԵՄԻ ՀԻՄՔՆ Է ԽՍՀՄ-ՈՒՄ

Ֆիզկուլտ շարժման վերելքին քիչ չի նպաստում ՊԱՊ-ի նոր կոմպլեքս մտցնելը։ «Պատրաստ աշխատանքի և ԽՍՀՄ-ի պաշտպանության» կոմպլեքսն առաջին անգամ



digitised by A.R.A.R.@

մտցվել է 1931 թվին և այդ ժամանակվանից դարձել է վողջ մասսայական ուսումնա-սպորտային աշխատանքի հիմքը։

Այդ մասին են խոսում հետևյալ թվերը. 1931—1939 թվականներին ՊԱՊ 1-ին աստիճանի նորմաները հանձնել են ավելի քան 5 միլիոն հոգի։ Ավելի քան 100 հազար մարդ ստացել է ՊԱՊ 2-րդ աստիճանի կրծքանշան։ Մեկ և կես միլիոնից ավելի դպրոցականներ դարձել են «Յեղիր պատրաստ աշխատանքի և պաշտպանության» կրծքանշանակիրներ։

Այդ տարիներին մեր յերկրում տեղի ունեցան մեծ փոփոխություններ։ Բարձրացան ֆիզիքական կուլտուրային և սպորտին առաջադրվող պահանջները։ ՊԱՊ կոմպլեքսը նախկին ձևով չեր համապատասխանում այդ աճած պահանջներին։ Անհրաժեշտություն եր ծագում փոփոխելու և կատարելագործելու այն։

Յեվ ահա 1939 թվի նոյեմբերի 26-ին Խորհրդային Միության կառավարությունը հաստատեց «Պատրաստ աշխատանքի և ԽՍՀՄ-ի պաշտպանության» Համամիութենական նոր ֆիզկուլտ կոմպլեքսի Կանոնադրությունն ու նորմաները։ Նոր կոմպլեքսն ուժի մեջ մտավ 1940 թվի հունվարի 1-ից։



Ինչո՞ւմն է տարբերությունը նոր և նախկին կոմպլեքսի միջև։

Նախկին կոմպլեքսում նորմաները ստանդարտ եյին և պարտադիր եյին հանդիսանում ամբողջ խորհրդային Միության համար, առանց հաշվի առնելու առանձին ռայոնների աշխարհագրական, կլիմայական և այլ առանձնահատկությունները։ Բնական է, վոր շատ նորմաներ հարկ յեղավ փոփոխել և նույնիսկ վերացնել։

Նոր կոմպլեքսում այդ ստանդարտությունը վերացվում է։ Յուրաքանչյուր ֆիզկուլտուրնիկ իրավունք է ստանում մասնակիորեն ընտրելու սպորտի այն տեսակները, վորոնց նա գերադասություն է տալիս։

ՊԱՊ կոմպլեքսում, վորը պարունակում է սպորտի և սպորտային խաղերի բոլոր հիմնական տեսակները, առանձնապես ավելացված է ֆիզիքական դաստիարակության այնպիսի տեսակների տեսակարար կշիռը, ինչպես ձեռնամարտը, ալպինիզմը, խոչընդոտների հաղթահարումը։ Զգալիորեն ավելի մեծ տեղ է գրավում նաև գիմնաս-



digitised by A.R.A.R.@

տիկան — ֆիզիքական ընդհանուր պատրաստության այդ բազան։

ՊԱՊ կոմպլեքսի նպատակն է մասսայաբար ֆիզկուլտուրայի մեջ ներգրավել նորանոր միլիոնավոր աշխատավորների։ Նա թույլ է տալիս ուսումնա-մարզական աշխատանքը սերտորեն շաղկապել սպորտային աշխատանքի հետ։ Մասնագիտանալով սպորտի վորոշակի բնագավառում, ֆիզկուլտ կոլեկտիվի յուրաքանչյուր անդամ կարող և պատրաստվել ՊԱՊ-ի նորմաների հանձնմանը։ Կոմպլեքսով նախատեսվող բազմակողմանի ֆիզիքական պատրաստությունը եվ ավելի մեծ չափով կոգնի սպորտային նվաճումների աճմանը։

Շատ ֆիզկուլտ կազմակերպություններ, վորոնք կարողացել են աշխատանքը վերակառուցել նոր հիման վրա մինչեվ ֆիզկուլտուրնիկի յերկրորդ Համամիութենական օրը, արդեն իսկ զգալի արդյունքների յեն հասել։

Առանձին հանրապետություններում, յերկրամասերում և մարզերում լավ անցկացավ սպորտի ձմեռային տեսակներից նորմաները հանձնելու գործը։ Դահուկից, օրինակ, Մոսկվայում նորմաները հանձնել են ավելի



քան 100 հազար հոգի, Ուկրաինայում մոտ 250 հազար հոգի և այլն։ Պրոֆմիությունների դահուկային կրոսսին մասնակցեցին 380 հազար հոգի — կրկնապատիկ ավելի, քան անցյալ տարի։

«Պատրաստ աշխատանքի և ԽՍՀՄ-ի պաշտպանության» համամիութենական ֆիզկուլտ կոմպլեքսը մեր յերկրի աշխատավորների ֆիզիքական դաստիարակության հիմքն է։ Նա ապահովում է հանրակողմանի ֆիզիքական զարգացումը և խորհրդային Միության քաղաքացիներին պատրաստում է աշխատանքային նոր հաջողությունների, նոր հաղթանակների՝ մեր հայրենիքի պաշտպանությունն ամրացնելու գործում։

## ԺՈՂՈՎՐԴԻ ՀԵՏ ՄԻԱՍԻՆ ԴԵՊԻ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ԱՌԱՋԱՎՈՐ ՃԱԿԱՏԱՄԱՍԵՐԸ

Մեր ֆիզկուլտ կազմակերպությունները, կամավոր ընկերությունները յերբեք չեն սահմանազատվել ընդհանուր քաղաքական



digitised by A.R.A.R.@

և պետական խնդիրներից։ Մեր ֆիզկուլտուրնիկներն ամենաակտիվ կերպով մասնակցում են յուրաքանչյուր պետական միջոցառմանը։ Իբրև օրինակ կարող և ծառայել Ուզբեկստանի ֆիզկուլտուրնիկների հիանալի նախաձեռնությունը, վորոնք աշխատում եյին Ստալինի անվան Ֆերգանի մեծ ջրանցքի շինարարության վրա։ Նրանց շնորհիվ, շինարարության մեջ ֆիզկուլտուրայով եյին պարապում հազարավոր մարդիկ, և մեծաչուք տեսարան եր ներկայացնում առավոտյան մարմնամարզական լիցքը, վորին մասնակցում եյին ջրանցքի կառուցողները։

Ադրբեջանի ֆիզկուլտ կազմակերպությունները ևս ակտիվ կերպով ոգնում եյին Սամուր-Դիվիչինյան ջրանցքի կառուցմանը։ Այդ հանրապետության ֆիզկուլտուրնիկներին մենք հանդիպում ենք նավթարդյունաբերության հաջողությունների համար, գյուղատնտեսության նոր հաղթանակների համար մղվող պայքարի առաջավոր դիրքերում։

Ստախանովյան ռեկորդներով դիմավորեցին ֆիզկուլտուրնիկները աշխատավորների դեպուտատների տեղական խորհուրդ-



ների ընտրական կամպանիան։ Նրանք ակտիվ և յեռանդուն ագիտատորներ ու պրոպագանդիստներ եյին։ Շատ քաղաքներում և գյուղերում ագիտացիոն նպատակով կազմակերպված եյին ավտոմոբիլային և հեծանվային վազքեր, յերկարատև անցումներ։ Հազարավոր ֆիզկուլտուրնիկներ աշխատում եյին վորպես ագիտատորներ և ընտրական հանձնաժողովների անդամներ։

Խորհրդային ֆիզկուլտ շարժումը պարծենում է իր լավագույն մարդկանցով։ Սպորտի վարպետ շքանշանակիր Բուխարովը, սպորտի վարպետներ շքանշանակիր Ալեքսանդր և Անդրեյ Ստարոստին յեղբայրները, «Դինամո» ցուցադրական ֆուտբոլային թիմի գոլապահ Ֆոկինը, գրոսմեյստեր շքանշանակիր Բոտվիննիկը, Խորհրդային Միության շախմատի վարպետ Մակոգոնովը, չմշկող Մ. Իսակովան, շքանշանակիր գիմնաստ Ջորջաձեն, ըմբշամարտի մարզիչ Միքանաձեն, թեթև ատլետ Պուգաչովսկին և ուրիշները արժանացած են ընտրողների վստահությանը և ընտրված են աշխատավորների դեպուտատների տեղական խորհուրդների դեպուտատներ։

Կոլխոզների ֆիզկուլտուրնիկները սո-

digitised by A.R.A.R.@

ցիալիստական մրցություն են կազմակերպել Համամիութենական Գյուղատնտեսական ցուցահանդեսին մասնակցելու իրավունքի համար։ Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի պատվո տախտակի վրա անցյալ տարի գրվեցին կոլխոզների, սովխոզների և ՄՏԿ-ների 152 լավագույն ֆիզկուլտ կոլեկտիվների անունները։ 1940 թվին մոտ հազար ֆիզկուլտ կոլեկտիվներ եքսպոնենտ են հաստատված և ներկայացված են Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսին։

Խորհրդային ֆիզկուլտուրնիկները խորհրդային ժողովրդի հավատարիմ վորդիներն ու դուստրերն են։ Մեր ժողովուրդը, վորն այնքան լավ գիտե գնահատել ուժը, ճարպկությունը, արիությունը և քաջությունը, սիրում ե ֆիզկուլտուրան, սիրում ե ֆիզկուլտուրնիկներին։ Ահա թե ինչո՛ւ հայրենիքը ֆիզկուլտուրնիկների իր բանակը շրջապատում ե ամենորյա հայրական հոգատարությամբ։

Յեվ դա ել պարտավորեցնում ե։ Յերկիրը ֆիզկուլտուրնիկներից սպասում ե նոր հաջողություններ։ Բազվի ակտիվի նախաձեռնությամբ սպորտային ընկերություննե-



րում և կոլեկտիվներում ծավալված ե ստալինյան Յերրորդ Հնգամյակի անվան սոցիալիստական մրցություն։ Այդ կոգնի բարելավելու ամբողջ ֆիզկուլտ աշխատանքի վորակը։ Այդ ել ավելի կամրացնի ֆիզկուլտ կոլեկտիվների կապը մասսայական պաշտպանական կազմակերպությունների՝ Պաշը-Ավիաքիմի, Կարմիր Խաչի ընկերության, ջրային փրկարար աշխատանքների ընկերության հետ։ Ամբողջ խորհրդային ժողովրդի հետ միասին մեր ֆիզկուլտուրնիկները, ակտիվ կերպով աշխատելով սոցիալիստական շինարարության առաջավոր ճակատամասերում, կգնա դեպի նորանոր հաջողություններ և նվաճումներ։

## ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՖԻԶԿՈՒԼՏՈՒՐՆԻԿՆԵՐԻ ԲԱԶՄԱՄԻԼԻՈՆ ԲԱՆԱԿԸ ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՅԵՎ ՌԱԶՄԱ-ԾՈՎԱՅԻՆ ՆԱՎԱՏՈՐՄԻ ՄԱՐՏԱԿԱՆ ՌԵԶԵՐՎՆ Ե

Յերկրի պաշտպանունակությունն ամրացնելու ուղղությամբ կուսակցության և կառավարության առաջադրած խնդիրներն իրենց արտացոլումն են գտել ֆիզկուլտ



digitised by A.R.A.R.@

կազմակերպությունների աշխատանքում։ Ավելի ու ավելի չի աճում ռազմական մասնագիտություններին տիրապետելու շարժումը։

Ամեն տարի Կարմիր բանակը ստանում է հիանալի համալրում։ Յուրաքանչյուր հերթական զորակոչը խորհրդային հայրենասիրության վառ ցուցադրումն է հանդիսանում։ Հավաքակայաններն են գալիս երիտասարդներ, վորոնք կոփվել են ֆիզիքապես, հանձնել են ՊԱՊ կամպլեքսի նորմաները, պատրաստված են ռազմական մասնագիտությունների։ Ֆիզկուլտ շարժման վիթխարի մասշտաբները բեղմնավոր կերպով արտահայտվել են խորհրդային յերիտասարդության առողջության վրա։ Ահա թե, որինակ, ի՞նչ է պատմում Մոսկվայի Կրասնայա պրեսնյա ռայոնի հավաքակայանի ավագ բժիշկ Գոլենիցկին.

—Յես անց եմ կացնում հինգերորդ զորակոչը։ Տարեց-տարի զորակոչիկների առողջությունը տալիս է ավելի ու ավելի բարձր ցուցանիշներ։ Նախահեղափոխական շրջանում զորակոչիկի միջին հասակը 155 սանտիմետր եր։ Մեզանում սակավ են հանդիպում 160 սանտիմետր հասակով զո-



րակոչիկի։ Ավելի հաճախ 165—170։ Վորպես կանոն, կրծքի վանդակի ծավալը հասակի կեսից ավելի չէ։ Այն չերեք հիմնական պատճառները, վորոնցով բժիշկները խոտանում եյին զորակոչիկներին նախկին ժամանակներում — թոքախտը, ստամոքսի և սրտի հիվանդությունները, այժմ ամենևվին չեն հանդիպում։ Մնում է հիանալ և նախանձել այդպիսի դյուցազնական առողջության համար։

Խորհրդային եպոխայի լավագույն պոետ Վլադիմիր Մայակովսկին քիչ չի գրել ֆիզկուլտուրայի և սպորտի հսկայական նշանակության մասին։ Նա կոչ եր անում յերիտասարդությանը պատրաստվելու թըշնամիների դեմ մղվելիք հաղթական մարտերին։ «Մկանդ, շնչառությունդ ու մարմինդ մարզիր ռազմական գործի ոգտին» վերնագրով բանաստեղծության մեջ պոետը գրում եր.

«Սովորի՛ր
սուրալիս
թռչել ձիու վրա,
սովորի՛ր
սուրալիս
կոտորել անխնա.



digitised by A.R.A.R.@

...Զարգացրո՛ւ
շունչըդ,
մկաններդ
ու մարմինդ,
վոչ թե
զուր տեղ
բիցեպոդ աճեցնելու համար,
այլ պաշտպանությունը,
ռազմական գործը
ամրացնելու համար,
սպիտակների դեմ
ավելի լավ
կռվելու համար»։

Մեր յերիտասարդությունը տարվում է ֆիզկուլտուրայով, վորովհետև ֆիզիքական կուլտուրան ապագա մարտիկներին սովորեցնում է համարվել ժամանակակից մարտի պայմաններին։ Նա ոգնում է կատարելապես տիրապետելու դահուկին, ավինին, նռնակին, տոկունություն է դաստիարակում։

Շատ ֆիզկուլտուրնիկներ, անցնելով Կարմիր բանակի շարքերը, արժանապատվությամբ և պատվով կատարեցին իրենց զինվորական պարտականությունը։ Սպիտակ ֆինների դեմ մղված մարտերում բացառիկ



քաջություն և արիություն ցուցաբերեց կրտսեր լեյտենանտ Պավել Ուսովը։ Հակառակորդի մրրկալի կրակի տակ նա, առաջնորդելով մակույկավորների մի ջոկատի, կտրեց անցավ գետը և դեսանտ ափ հանեց։ Ուսովին տրված է Խորհրդային Միության հերոսի կոչում։ Նախքան բանակում ծառայելը Պավել Ուսովը վորպես ֆիզիքական կուլտուրայի դասատու աշխատում էր Արխանգելսկ քաղաքի դպրոցներից մեկում։ Հիանալի սպորտսմեն լինելով ,նա իր մեջ դաստիարակել է սառնասրտություն և հաղթելու յերկաթյա կամք։ Կարմիր բանակն է՛լ ավելի ամրացրեց այդ բարձր հատկությունները։

Դահուկային սպորտի վարպետ, ԽՍՀՄ-ի 1939 թվի չեմպիոն Վ. Մյագկովը ցույց տվեց, թե ի՛նչպիսի հերոսական սխրագործությունների յեն ընդունակ խորհրդային հայրենասերները, վորոնք կոփված են ֆիզիքապես, կատարելապես տիրապետում են անհրաժեշտ մարտական ունակություններին։ Գլխավորելով հեռավոր հետախույզների մի խմբի, նա 80—90 կիլոմետր մըտավ հակառակորդի զբաղեցրած տերիտորիայի խորքը, հավաքեց արժեքավոր տե-



digitised by A.R.A.R.@

ղեկություններ, ջարդեց թշնամիներին։ Մարտական առաջադրություններն օրինակելի կերպով կատարելու և ընդ ամին քաջություն և հերոսություն ցուցաբերելու համար Վ. Մյագկովն արժանացավ Խորհրդային Միության հերոսի կոչման։

Դմիտրի Բալախանովը տարիներ շարունակ ձեռնամարտ և գիմնաստիկա էր դասավանդում Լեսգաֆտի անվան ֆիզկուլտուրայի ինստիտուտում։ Ֆիզկուլտ հասարակությունը լավ է ճանաչում նրան որպես հիանալի մանկավարժի, արժանավոր կոմունիստի և հոյակապ սպորտսմենի։ Դմիտրի Բալախանովը, մասնակցելով ֆիննական սպիտակ գվարդիականության դեմ մղվող մարտերին, արիություն և ազնվություն ցուցաբերեց. թշնամու կրակի տակ նա կռվի դաշտից միմյանց հետևից դուրս բերեց 15 վիրավոր ընկերներ և դրանով փրկեց նրանց կյանքը։

Խորհրդային ֆիզկուլտուրայի պանծալի սան Դմիտրի Բալախանովին, ֆիննական ճակատում մղվող պայքարում ցուցաբերած արիության համար, կառավարությունը շնորհեց Խորհրդային Միության Հերոսի կոչում։

Բոլոր խորհրդային ֆիզկուլտուրնիկները



ձգտում են լինել այդպիսին։ Խորհրդային ֆիզկուլտուրնիկի համար չկա և չի կարող լինել ավելի մեծ ուրախություն, քան զենքը ձեռքին ժողովրդի մեծ նվաճումները պաշտպանելու բարձր պատիվը։

Հուլիսի 21-ին խորհրդային ժողովուրդը յերկրորդ անգամ տոնելու յե ֆիզկուլտուրնիկի Համամիութենական օրը։ Այդ օրը Մոսկվայի Կարմիր հրապարակում կկայանա տրադիցիոն Համամիութենական ֆիզկուլտ շքահանդեսը։

12 յեղբայրական հանրապետությունների ֆիզկուլտուրնիկները ռապորտ կտան ընկեր Ստալինին, կուսակցության և կառավարության ղեկավարներին, ամբողջ ժողովրդին ԽՍՀՄ-ի ֆիզկուլտ շարժման նոր հաջողությունների և հաղթանակների մասին։

Յեվ այդ ռապորտի մեջ մեր մեծ ժողովուրդը կտեսնի ինքն իրեն, իր ուժն ու արիությունը, իր քաջությունը, իր բոցավառ սերը հայրենիքի նկատմամբ, նրա փառքն ու հզորությունն ամրացնելու իր պատրաստակամությունը։

---

digitised by A.R.A.R.@

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՖԻԶԿՈՒԼՏՈՒՐՆԻԿՆԵՐԻ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Մեր կուսակցության և խորհրդային կառավարության ամենօրյա հոգատարության շնորհիվ օրեցօր աճում, զարգանում է ֆիզկուլտուրան Հայաստանում։ Ներկայումս Հայկական ՍՍՀ-ում կան 25-ից ավելի սպորտ ընկերություններ, հարյուրավոր կոլեկտիվներ ու խմբակներ, վորոնցում ընդգրկված են 31.000 ֆիզկուլտուրնիկներ։

Ստալինյան հնգամյակների տարիներին Հայաստանում կառուցվել է յերեք ստադիոն և մեկ վելոդրոմ։ Միջին կվալիֆիկացիայի ֆիզկուլտ. մասնագետներ պատրաստելու համար ունենք մեկ ֆիզկուլտ տեխնիկում, բացի այդ, կազմակերպված են նաև դասատուների վերապատրաստման կուրսեր։

Հայաստանի ֆիզկուլտ կազմակերպության շարքումն են գտնվում սպորտի զանազան տեսակների վարպետներ, և՛ միութենական, և՛ համաշխարհային ռեկորդամեն-



ներ։ 35 համաշխարհային ռեկորդներից 25-ը նվաճված է ՍՍՀՄ-ի ֆիզկուլտուրնիկների կողմից, վորից 2-ը պատկանում են շքանշանակիրներ՝ ընկ. ընկ. Համբարձումյանին ու Մանուկյանին։ Սպորտի լավագույն վարպետներ են՝ ընկ. ընկ. Վարդանյանը, Ազդարովը, Պլյասուլյանը, Խուդգարյանը, Ցեոֆանովը, Գասպարյանը և ուրիշները, վորոնց աճեցրել ու դաստիարակել է ֆիզկուլտ կազմակերպությունը և վորոնք համամիութենական ռեկորդներ են նվաճել։

Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի պատվին կազմակերպված մասսայական վազքերում, վորն անցկացվեց միութենական հանրապետությունների միջև, Հայաստանը գրավել է յերրորդ տեղը։

Վաղարշապատի ՄՏԿ-ին կից «ՀԱՍԿ» ֆիզկուլտ կոլեկտիվն օրինակելի աշխատանքի համար Համամիութենական ֆիզկուլտ կոմիտեյի կողմից պարգևատրվել է 5000 ռուբլով։ Այս տարի Հայաստանի 13 ֆիզկուլտ կոլեկտիվներ և գյուղական ֆիզկուլտ աշխատողների 19 առաջավորներ ա-



digitised by A.R.A.R.@

ռաչադրված են գյուղատնտեսական ցուցահանդեսին մասնակցելու համար։

Հուլիսի 21-ը ֆիզկուլտուրայի կազմակերպության ուժի ու գեղեցկության տոնն է, Լենինի-Ստալինի փառապանծ դրոշակի տակ աճած միլիոնավոր ֆիզկուլտուրնիկների զորատեսի օրը։ Այդ օրը ԽՍՀՄ-ի ֆիզկուլտ. կազմակերպությունները իրենց կամքն ու պատրաստականությունն են հանդես բերում պաշտպանելու խորհրդային ժողովրդի՝ Լենինի-Ստալինի մեծ կուսակցության ղեկավարությամբ ձեռք բերած վիթխարի հաջողությունները։

Անցյալ տարի, հուլիսի 18-ին, Հայաստանի ֆիզկուլտուրնիկները Մոսկվայի Կարմիր Հրապարակում ցուցադրեցին հայ ժողովրդի մեծ էպոս «Սասունցի Դավիթ»-ը, նրանք ցուցադրեցին խորհրդային կարգերում աճած հարյուր հազարավոր դավիթների ուժն ու կարողությունը։ Այս տարի, հուլիսի 21-ին, Համամիութենական ֆիզկուլտ տոնի օրը, յեղբայրական 12 հանրապետությունների ֆիզկուլտուրնիկները Կարմիր Հրապարակում կցուցադրեն իրենց ուժն ու գեղեցկությունը և պատրաստականությունը հայրենիքը պաշտպանելու համար։

---



Պատ. խմբագիր՝ Դ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
Պատ. Սրբագրիչ՝ Գ. ԱՍՏՎԱԾԱՏՐՅԱՆ

Սրբագրիչ՝ ՀԱՐ. ՓԱՐԻԿՅԱՆ

Գլավլիտի լիազոր՝ Ջ—1182
Պատվեր՝ 580, տիրաժ՝ 8555
Հանձնված է արտադրության 6/VII 1940 թ.
Ստորագրված է տպագրության 17/VII 1940 թ.

Հայկական ԽՍՀ Ժողկոմխորհին կից Թերթերի և ամսագրերի տպարան, Երևան.

digitised by A.R.A.R.@